

# ՊԻՈՆԵՐ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ 7. 1980



ՕԼԻՄՊԻԱԴԱ—80

OLIMPIADA—80

OLYMPIADE—80

ОЛИМПИАДА—80



# ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԿՐԱԿԻ ՈՒՂԻՆ

Օլիմպիական խաղերի բացումից մեկ ամիս առաջ՝ հունիսի 19-ին, Ոլիմպոսի սրբազան պուրակում, ուղիղ ժամը 11-ին կատարվեց Օլիմպիադա—80-ի հետ կապված առաջին հանդիսավոր արարողությունը՝ օլիմպիական կրակի բոցավառումը: Զևսի տաճարի գլխավոր քուրմը հայելիով որսաց արևի ճառագայթը և այն ուղղեց ջահի վրա: Քուրմի հանդիսավոր ուղեկցությամբ օլիմպիական կրակն սկսեց իր ուղևորությունը դեպի հնագույն ստադիոն, որտեղ Հունաստանի, Օլիմպիադա—80-ի կազմկոմիտեի և օլիմպիական շարժման մասնակից երկրների պատվիրակների ներկայությամբ բոցավառվեց օլիմպիական ջահը:

Կեսօրից հետո սպիտակ տունիկայով, ձիթենու ճյուղերով պսակը գլխին գեղեցկատես աղջիկը նորածին օլիմպիական կրակը ձեռքին դուրս եկավ ստադիոնից: Ջահը 1170 կիլոմետր անցավ Հունաստանով... Քսանչորս կանգառ հին օլիմպիադաների հայրենիքում, յուրաքանչյուրը 15 րոպե: Հունիսի 25-ին հունական սահմանի վրա հույն մարզիկները կրակը հանձնեցին բուլղար ջահակիրներին, որոնք յոթ օրում, անցնելով 935 կիլոմետր, ջահը հասցրին մինչև Ռուսե: Դանուբի բարեկամության կամրջի վրա նրանցից ջահը ընդունեցին Ռումինիայի մարզիկները: Հինգ օր շարունակ օլիմպիական երկնագույն կրակն անցավ Ռումինիայի գյուղերով ու քաղաքներով: Այնուհետև ջահը մտավ Սովետական Միություն, անցավ Մոլդավիայով, Ուկրաինայով ու ՌՍՖՍՀ-ով: 1980 թվականի հուլիսի 19-ին օլիմպիական ջահը մտավ Մոսկվայի Լենինի անվան մարզադաշտ ու բոցավառեց օլիմպիական մեծ կաթսան:

Եվ սկսվեց ուժի, գեղեցկության ու ճարպկության համաշխարհային ստուգատեսը:

# ՀԵՔԻԱԹԻ Է ՆՄԱՆ








«Արարատ» պիոներական ճամբարը ամենավերջին բնակավայրն է Հանքավանի ձորում: Արահետից բացի, որով ճամբարը կապված է մոտակա ու հեռավոր բնակավայրերի հետ, մնացած բոլոր կողմերում ծառախիտ, բարձրանիստ լեռներ են, ծածկված բազմերանգ վայրի ծաղիկներով:

Անտառը հարուստ է հատապտուղներով, վայրի կենդանիներով, լեռների ընդերքում հանքային հարստությունների մեծ պաշարներ կան, ինչպես նաև բուժիչ ջըրեր... Մի խոսքով, հեքիաթային մի վայր՝ արժանի իր բնակիչներին:

Ճամբարում հայտարարված էր ննջարանների ու դրանց մերձակա գոտիների ձևավորման մրցույթ-ստուգատես:

Ամենափոքրիկների՝ 8-րդ ջոկատի մասնաշենքի մոտ տերևներով, քարաքոսներով, կոճղերով ձևավորված լճակ էին պատրաստել, որի մեջ լողում էին փայտե ու պենոպլաստե նավակներ, վրան՝ կորամեջք կամրջակ, իսկ կողքին՝ հյուղակ:

Ճամբարի սուղ պայմաններում երեխաները նյութեր էին ցուցադրել Վ. Ի. Լենինի կյանքի ու հեղափոխական գործունեության, աշխարհի մա-

նուկների առօրյայի, գիտության ու արվեստի, գրականության ու բնության վերաբերյալ և առանձին անկյուններում ցուցադրել դրանք:

Ինչպես 8-րդ, այնպես էլ մյուս ջոկատների անկյունները ներկայացնում գույն ստեղծագործությունների մասին:

Ջոկատները շատ անակնկալներ մատուցեցին ժյուրիին, բայց ամենաուշագրավը 5-րդ Ա ջոկատինն էր: Ստուգատես-մրցույթից առաջ մասնակիցները կարծում էին, թե այդ ջոկատը էին, թե ով էր օգնել նրանց և այդքան հարուստ անկյուններ ստեղծել սենյակներում, ճամբարի մանրանմուշը, հերոսների հուշարձանը՝ դըրսում, այն էլ անմար կըրակով:

Հինգերորդ Ա ջոկատը վեցերորդի հետ առաջին



*Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ԽԱՐԱՋՅԱՆԻ*

էին ճամբարականները:

Ժյուրին շատ հետաքըրքիր նկարներ տեսավ Հայաստանի տեսարժան ու պատմական վայրերի, աշխարհում գոյություն ունեցող ծաղկատեսակների, տարբեր գրողների ու արվեստագետների գործերի, նրանց լավագույն մրցակից չէ իրենց, որովհետև հինգերորդ Ա-ի ջոկատավարը վատառողջ էր և ի վիճակի չէր աշխատանքները կազմակերպել, բայց երբ հերթը հասավ նրանց սենյակների ու դրսի տարածքի աշխատանքները դիտելուն, բոլորը զարմանքով մտածում տեղը կիսեց: Իսկ ջոկատին նախապատրաստել էր Երևանի № 96 դպրոցի 9-րդ դասարանի աշակերտուհի Հասմիկ Մարջանյանը: Նա հոկվարական աշխատանք էր տանում փոքրիկների խմբերում, երբ իմացավ, որ հինգերորդ ջոկատը դժվարության մեջ է, օգնության հասավ:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

# ՃԱՄԲԱՐԻ ԳԻՇԵՐԱՅԻՆ ՀՅՈՒՐԸ

էին քոթոթները կատարում մոր հրամանները: Բավական էր, մայրը բարձրացներ թաթը, քոթոթներն իսկույն ծլկում էին տեսադաշտից, իսկ երբ շուրջ բոլորը ուշադիր զննելուց, հոտոտելուց հետո մայրը գլխի թեթևակի տատանումով նշան էր անում, նույն արագությամբ նրանք հայտնվում էին մոր կողքին:

բեկվում, շարունակում էին խաղը:

Հաջորդ օրը, ուշ երեկոյան մայր արջը նորից հայտնվեց ճամբարի մոտ, կերակրի թափոնների արկղից ինչ-որ բան առավ ու փախավ անտառ: Վստահ, որ նա դարձյալ կգա, լուսանկարիչ ընկեր Խարազյանը տեղավորվեց դարպասին մոտիկ գտնվող փոքրիկ դեզի ետևում:



Լուրը ճամբարում տարածվեց գիշերով ու կայծակի արագությամբ: «Մայր արջն իր քոթոթներով իջել է ճամբար»... Միջանցքների պատուհանների մոտ խմբվեցին երեխաները: Լարված հետաքրքրությամբ, ուրախության անզուսպ ճիչեր արձակելով, հետևվում էին մայր արջին ու նրա զույգ քոթոթին: Ինչպիսի՜ արագությամբ

Մի քանի անգամ այդ նույնը կրկնելուց հետո, հենց ճամբարի դարպասների մոտ, պայծառ լուսավորության տակ, սկսվեց արջերի ընտանեկան ելույթը: Քոթոթները ճարպկությամբ գետնում էին իրար կամ հսկա մորը, գլուխկոնծի էին տալիս չոր ասֆալտին... Պիոներների աղաղակները անշուշտ հասնում էին արջերին, բայց նրանք չէին ահա-

Եվ իրոք եկավ ոչ միայն մայրը, այլև քոթոթները: Սակայն գիշերային լուսանկարչության համար պահանջվում էր 5—10 վայրկյան անշարժ մնալ: Քոթոթներն այդքան համբերություն չունեցան, իսկ մայրը բավականին լավ դիրքով լուսանկարվեց:

Նախաճաշից հետո բոլոր ջոկատներն արդեն ունեին գիշերային հյուրի լուսանկարը:

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ



## ԾՆԾՂՈՒԿ

Օրվա շշուկներն են ննջում մեկիկ- մեկիկ,
Քուն է մտնում օրը, քուն է մտնում,
Իսկ այս ծառին ահա մի ճնճղուկ, մի պստլիկ,
Օրորվում է, շարժվում, վեր-վեր թռչում:
Տաքուկ, փոքրիկ ու գիրգ՝ լոռիկի պես կլոր,
Բաց մոխրագույն, տեղ-տեղ սև շերտերով,
Իմ լավի՞կս, իմ խե՞նթ, իմ ծլվլա՞ն, անո՞գ,
Դու ո՞ւր պիտի գնաս այս գիշերով:
Արի՛, կտցի՛ր փշրած կտորները հացի,
Հետո խմի՛ր, ջուր եմ դնում նաև,
Հետո տաքուկ, փափուկ, գլուխ գլխի տված,
Իմ անկողնում, ճնճղո՛ւկ, քնենք մեկտեղ:

## ԱՄԱՌ

Եվ մի բարի ամառ,
Մի բարկ ու շոգ ամառ,
Մի ոսկեշուրթ ամառ,
Մի ոսկեբեռ ամառ
Մեր դռներն է ծեծում:
Ի՞նչ կարոտ են լալիս
Այս նռները հասուն,
Այս ծիրանը շեկլիկ՝
Դեղձանիկ է ասես,
Դեղձը, դեղձը թավշյա
Մանկան թշիկ է խաս,
Սալորն՝ հակինթ ուլունք,
Տերևները՝ բեհեզ...
Եվ մի բարի ամառ,
Մի ոսկեբեռ ամառ
Մեր դռներն է ծեծում:

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

## ԾԻԼՆ ՈՒ ԿԱԹԻԼԸ

Այս ծիլը աննինջ
Ինչքան է տանջվել,
Ասֆալտի միջից
Մինչ ելել է վեր:
Իսկ այս ժայռամոր
Կաթիլի ծորը,
Քարեր ծակելով՝
Իջել է ձորը:
Այս արևի տակ
Քեզ, փոքրի՛կ տղա,
Թող կյանքն այդքան մեծ
Համբերություն տա:



## ԲՆԱՊԱՏԿԵՐ

Ջրվալ գետում մի տղա
Լողացնում է իր հորթին,
Մի մասրենի ճամփի մոտ
Բույր է տալիս անցորդին:

Բաղեղները քարայրի
Մուտքն են փակում մամռաքար,
Աղավնիները վայրի
Օդում գգվում են իրար:

Թավիշ խոտը չեն հնձել,
Ալիքվում է մեղմածուփ,
Կանաչ դրոշ է դարձել
Հանդում ամեն ծառ ու թուփ:



# Մեր ձուկը

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Խանութից կենդանի ձուկ էի գնել: Երեխաները գցել էին լողարանի մեջ, կերակրել հացի փշրանքներով, և նա կուշտ ու գոհ լող էր տալիս:

— Գնա հանի՛ր, մորթենք,— ասաց մայրս:

Մտա լողասենյակ: Ձուկը, կարծես նախօրոք վարժեցրած լինելով, մոտեցավ լողարանի եզրին և աչքերը հառեց վրաս: Այնքան խնդրող ու թախծոտ էր նրա հայացքը: Մեկնեցի ձեռքս, բայց ձուկը շրջվեց և պոչով զարկելով ջրին, հեռացավ: Մի քիչ լողալով նորից մոտեցավ ինձ ու հայացքը հառեց վրաս: Եվ հանկարծ հետս ինչ-որ բան կատարվեց: Զգացի, որ այլևս չեմ կարող մորթել այդ ձկանը:

Երեխաները շատ ուրախացան: Մայրս ժպտալով կարտոֆիլ դրեց գազօջախին խաշելու: Երբեք այդքան համով կարտոֆիլ չէինք կերել: Իսկ ձուկն իր համար խայտում էր լողարանում:

Մի քանի օր մնաց: Արդեն այնքան էինք ընտելացել նրան, որ երբ ամեն անգամ լողասենյակ մտնելիս մոտենում էինք, գլուխը դուրս էր հանում ջրից, հրճվում էինք:

Բայց քանի որ բոլորս էլ արդեն լողանալու պահանջ ունեինք, ուզած-չուզած ձուկը հանելու էինք լողարանից:

— Թե խանութ վերադարձնենք, ուրիշները կառնեն կմորթեն,— տխրեց աղջիկս:

Երկար լռություն տիրեց: Տղաս մի հետաքրքիր առաջարկություն արեց: Կիրակի օրն իջանք Հրազդանի կիրճը ու մեր ձկանը բաց թողեցինք գետում: Ձուկը մի պահ մնաց անշարժ պառկած, ապա դանդաղորեն լողաց հեռու և սուզվեց հատակը: Նստած սպասում էինք: Տղաս ու աղջիկս երջանիկ ժպտում էին: Ուրախ տրամադրությամբ տուն վերադարձանք:

Մի ամբողջ շաբաթ նրանից էինք խոսում։ Հիշում էինք, թե ինչպես էր մոտենում լողարանի եզրին, դուրս հանում քիթը, չարաճճի նայում, ապա պոչով խփում ջրին ու պտույտներ գործում։ Բոլորս ժպտում էինք, բոլորս ավելի բարի ու հոգատար էինք դարձել միմյանց նկատմամբ։

Կիրակի օրը տղաս ու աղջիկս խնդրեցին գնալ ձկանը տեսության։ Ես ժպտացի նրանց միամտության վրա, բայց գնացինք։ Արևոտ օր էր։ Ծաղիկները ժպտում էին, մրրեխները սրտաճաք դուրս թռչում ոտքներիս տակից։ Երբեք այդքան գեղեցիկ օր չէինք տեսել։

— Հազար ձկների մեջ էլ լինի, կըճանաչեմ,— ասում էր աղջիկս,— հենց քիթը դուրս հանի, կճանաչեմ...

— Ես էլ կճանաչեմ,— ուրախուրախ ասում էր տղաս,— պոչի կեսը կտրված էր։

— Ես էլ կճանաչեմ,— ասում էի ես՝ ժպտալով նրանց երեխայական միամտության վրա,— քթից վերև սև բիծ կար։

— Կգնանք, կկանգնենք ափին, կըկանչենք... ու երբ դուրս լողա, հացի փշրանքներ կգցենք առաջը։

— Մեզնից չի վախենա, չէ՞,— ասում էր տղաս,— կճանաչի։

— Չի վախենա,— ասում էի ես,— չէ՞ որ մեր ձուկն է։

Ափին ձկնորսներ էին շարվել, երեխաներ, մեծահասակ տղամարդիկ։ Ինչքան էլ շա՜տ էին՝ առաջ չէինք նըկատում։ Կարթերը նետում էին ջրի մեջ, ագահ հայացքով սպասում։

— Ձկնորսները...— անհանգստացած ասաց աղջիկս։

Ես լռեցի։ Մի տարեց մարդ կանգնած էր այն քարի վրա, որտեղից թողեցինք մեր ձկանը։ Անհանգստության ալիք անցավ մարմնովս, սակայն ծիծաղեցի ինքս ինձ վրա. «Հիմա ի՞նչ իմանաս ուր է լող տվել...»

Լուռ քայլում էինք։ Մոտեցանք ձըկնորսներին։ Բարևեցինք։

Տղաս ու աղջիկս վազ տվեցին քարի մոտ, որտեղից բաց էինք թողել ձկանը։ Ես նույնպես դանդաղորեն քայլեցի դեպի այնտեղ։ Հանկարծ լըսվեց աղջկանս ճիչը։ Երկար ու մղկըտացող։

— Ի՞նչ պատահեց...

Բոլորն անհանգստացած շրջվեցին նրա կողմը։

— Հայրի՜կ, մեր ձո՜ւկը... Նրան բռնե՜լ են...

Ես արագ մոտեցա։ Աղջիկս ու տըղաս անշարժ կանգնած, ցավից ու հիասթափությունից չոված աչքերով նայում էին ծառի բարակ ճյուղից կախված, ջրի մեջ անտարբեր տարուբերվող ձկանը։ Ուշադրությամբ նայեցի։ Պոչի կեսը չկար, իսկ ճակատին՝ քթից վերև, հստակ երևում էր սև բիծը։

Կարծես ինչ-որ շատ հարազատ ու մոտիկ մի բան կորցնեի։ Կոկորդս մի պահ սեղմվեց։ Աղջկաս ու տղայիս աչքերում արցունքներ էին փայլում։ Մեծահասակ ձկնորսը զարմանքով մեզ էր նայում։ Ես մի քանի խոսքով բացատրեցի նրան եղելությունը։ Բոլոր ձկնորսները հավաքվեցին, սկսեցին ուշադիր նայել մեկ մեզ, մեկ ճյուղից կախված, ջրում անտարբեր օրորվող ձկանը։ Տարեց ձկնորսն իջավ քարից, ջրից հանեց ճյուղը, մեր ձուկն առանձնացրեց, մեղավոր ժպիտով մեկնեց աղջկաս։ Ապա մի պահ մտածելուց հետո մնացած ձկները նետեց ջրի մեջ, կարթը դուրս հանեց ջրից, կարթաձողը սեղմեց ծնկանը, ջարդեց շպրտեց ալիքների վրա ու լռությամբ գլխիկոր գնաց քաղաք տանող ճանապարհով։

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 27. «ԱՆՁՐԵՎԸ ՎՐԱ Է ՏԱԼԻՍ», ԿԱՄ՝ ԱՅԼԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ ԱՌՀԱՍԱՐԱԿ

Իրոք, եթե անձրևն առատորեն թափվում է, ինչո՞ւ հենց այդպես էլ չենք ասում, այլ դիմում ենք *վրա տալ* դարձվածքին: Իսկ եթե, ընդհակառակը, մեղմ անձրև է թափվում, ինչո՞ւ ենք ասում՝ *անձրևը մաղում է*: Անձրևը հո մաղ չունի՞, որ մաղի, ինչպես ալյուրն են մաղում: Ասում ենք՝ *արևը ժպտաց*, արևը մա՞րդ է, որ ժպտա:

Այդպես ենք ասում, որովհետև ընդգծված դարձվածքներն ավելի վառ են, պատկերավոր ու տպավորիչ: Բայց ինչպե՞ս ենք ձեռք բերում խոսքի այդ որակը: Մի երևույթի հատկանիշները նմանողաբար մեկ ուրիշին վերագրելով: Հենց դա էլ կոչվում է *տրոպ* կամ *այլաբերություն*:

Այլաբերությունն ստեղծվում է տարբեր երևույթների նմանությունն ի հայտ բերելու շնորհիվ: Իսկ դրա համար հարկավոր է երևակայություն, պատկերավոր մտածողություն, ուրիշ խոսքով՝ շնորհք: Ոչ ոք չի կարող ասել, թե ով է այն առաջին մարդը, որ ասել է *անձրևը վրա տվեց, անձրևը մաղում է* կամ *արևը ժպտում է*, բայց կասկածից վեր է, որ նա եղել է շնորհալի մարդ: Ուրիշ բան, որ մենք վաղուց ի վեր սովոր լինելով դրանց՝ շնորհքի կնիքը չենք էլ նշմարում, գործ ենք ածում և՛ այդ, և՛ ուրիշ մեծաթիվ այլաբերություններ՝ առանց դրա մասին երկար ու բարակ մտածելու, առանց նկատելու, թե դրանց շնորհիվ ինչքան է հարստանում, ճկուն ու շքեղ դառնում մեր խոսքը:

Չլիներ այլաբերությունը՝ շատ տըխուր կլիներ կյանքը, քանի որ լեզուն՝ մարդկանց շփման գլխավոր միջոցը, չէր ունենա գույներ, համ ու հոտ, կդառնար պարզ թվաբանություն: Վերջապես, առանց այլաբերության՝ լեզուն ի վիճակի չէր լինի արտահայտելու կյանքն իր բովանդակ հարստությամբ, իր բյուրավոր գույներով:

Լեզվի մեջ ոչինչ հենց այնպես, պատահաբար չի լինում: Այստեղ ամեն ինչ կատարվում է անհրաժեշտաբար, ինչ-ինչ կարիքների, օրենքների թելադրանքով: Ի՞նչն է, որ ծնունդ է տվել այլաբերությանն ու նրա տարատեսակներին: Հավանաբար այն, որ կյանքն իր անթիվ-անհամար դըրսևորումներով շատ ավելի հարուստ երևույթ է, քան լեզուն, քան բառապաշարը, դարձվածքների պաշարը: Իսկ մի երևույթը նմանողաբար մեկ ուրիշ երևույթի հատկությամբ բնորոշելը լեզվի արտահայտչական հնարավորությունները հարստացնում է չափազանց:

Դրա շնորհիվ էլ «քիչ» բառերով ու դարձվածքներով բնութագրվում են

շատ երևույթներ, արտահայտվում են շատ հասկացություններ, մտքեր ու զգացմունքներ:

Ժամանակակից ֆրանսիացի լեզվաբան Ալան Լերոնը՝ 74.000 բառ պարունակող ֆրանսերենի բացատրական բառարանի հեղինակներից մեկը, ցույց է տվել, թե այդ վիթխարի բառապաշարի որքան փոքր մասն է գործի դրվում առօրյա կյանքում: Իրոք որ զարմանալիորեն քիչ՝ ոչ ավելի, քան 1500 բառ: Դա հաստատել են այն լեզվաբանները, որ մագնիտաֆոնով գրանցել են ֆրանսիացիների խոսակցությունը վարսավիրանոցում, սրճարանում և այլուր: Հիմա տեսեք՝ 74.000-ն ո՞ւր, 1500-ն ո՞ւր: Բայց լեզվաբանը դա այնքան էլ տարօրինակ չի համարում:

Առօրյա կյանքում հայերի գործածած բառերի քանակն ավելին չէ, քան ֆրանսիացիներինը: Իսկ գրականությանը դառնալով, կարող ենք ստույգ ասել՝ Հովհաննես Թումանյանի նման գրողն իր գեղարվեստական երկերում գործ է ածել շուրջ 9000 բառ: Բոլոր այդ բառերը մեղվաջան խնամքով համակարգել ու մի առ մի բացատրել է լեզվաբան Լիդա Պետրոսյանը՝ «Հովհաննես Թումանյանի գեղարվեստական երկերի բառարանի» հեղինակը:

Ինչո՞ւ ենք մեջբերում այս տվյալները: Ասելու համար, որ բանը բառերի քանակը չէ, այլ դրանց գործածման որակն է, հմտությունը, արվեստը: Շատ հնարավոր է, որ Թումանյանից նվազ տաղանդավոր գրողներ ավելի մեծ բառապաշար ունենան:

Այս մեկ: Մյուս խնդիրը, որ ավելի կարևոր է մեր այս զրույցի համար, հետևյալն է. 1500 բառը դեռևս չի նշանակում, թե մարդիկ իրենց առօրյա խոսակցության մեջ հենց միայն 1500 բառ-հասկացություն են գործածել: Ո՛չ, նրանք օգտագործել են շատ ու շատ ավելին:

Ինչի՞ շնորհիվ:

Երկու պարագայի:

Մեկ, որ ամեն մի բառ ունի մեկից ավելի նշանակություն. հիշածս ֆրանսիացի լեզվաբանի հաշվումներով, «ֆրանսերենում ամեն մի բառ միջին հաշվով ունի շուրջ չորս նշանակություն, իսկ բառեր էլ կան, որ ունեն մինչև քառասուն-հիսուն նշանակություն»:

Բացի այդ, բառերը նոր իմաստներ, նոր գույներ են հայտնաբերում այլաբերությունների շնորհիվ: Դատենք օրինակով: Ի՞նչ կարող է լինել ավելի կոնկրետ, ավելի առարկայական, քան ջուր բառն է. ըստ բացատրական բառարանի, դա ոչ այլ ինչ է, քան «Թափանցիկ անգույն հեղուկ, որ մաքուր վիճակում ներկայացնում է ջրածնի ու թթվածնի միացություն և հավաքվելով կազմում է առուներ, գետեր, լճեր և այլն»: Բայց նույն այդ բառն ունի բազմաթիվ այլ իմաստներ, որոնք ի հայտ են գալիս այլևայլ կիրառությունների շնորհիվ: Երբ Թումանյանը «Անուշ» պոեմում գրում է «Կըժերն ուսած՝ թըռվըռալով ջուրն են իջնում աղջիկներ», ապա այստեղ ջուր բառն աղբյուր-ի իմաստն ունի: Երբ Անուշն ասում է «Ես կըհալվեմ—ջուր կըդառնամ», ապա դա նշանակում է հալումաշ լինել: Երբ վարպետ Բզեզն իր սաներին պատվիրում է, թե՝ վաղը կգաք տված դասն «անգիր արած ջրի պես», ապա դա նշանակում է «վարժ ու սահուն արտասանել»: Երբ բանաստեղծը գրում է, թե ինչպես Մսրա Մելիքը երկու կես եղավ Դավթի զարկեց և ինչ կատարվեց դրանից հետո՝

Էս որ տեսավ Մըսրա բանակ,
Ջուր կըտըրվեց ահ ու վախից,



Խաղաղության պողոտայի վրա օլիմպիադա—80-ի վեր խոյացած ծածկած մարզադաշտը միանգամից կարող է 45 հազար մարզասեր ընդունել: Ծածկի տակ է առնված 33 հազար քառակուսի մետր տարածություն: Այստեղ հիմնականում անցկացվելու են բռնցքամարտի ու բասկետբոլի մրցումներ, այստեղ կարելի է անցկացնել նաև ֆուտբոլ, հոկեյ և այլ խաղեր...

ապա սա նշանակում է «սարսափահար լինել»: Միշտ նույնը, ինչ կատարվում է քաջ Նազարի հետ, երբ նա տեսնում է վագրին. «...լեղին ջուր է կտրում, աչքերը սևանում են» (ասենք փակագծում, որ ը-երի գոյությունը բառամիջում հետևանք է գաղտնավանկը բաց անելու, որ արվում է ոտանավորի չափը պահելու համար. հայերենում այդպես կոչվում է այն վանկը, որի մեջ ը-ն հնչում է, բայց չի գրվում):

Հիմա ջուր-ը թողնենք, գանք հաց բառին, որ նշանակում է «ալյուրից թըխած ամենօրյա ուտելիք»: Բայց ահա ասում ենք՝ նա իր հացը կերավ, մինչդեռ հասկանում ենք՝ նա իր պատիժն առավ, ասում ենք՝ նա դեռ շատ հաց ու պանիր պիտի ուտի, հասկանում ենք՝ նա դեռ շատ պիտի փորձվի:

Ահա թե ինչքան իմաստներ են հայտնաբերում բառերն այլաբերությունների շնորհիվ: Չափազանց մեծ է այլաբերության դերը և՛ գրականության, և՛ մեր առօրյա կյանքում գործի դրվող լեզվի մեջ: Ահա թե ինչու արժե, որ մենք ծանոթանանք այլաբերության տարատեսակներին: Դրանք այնքան էլ շատ չեն և ոչ էլ այնքան բարդ են, որքան կարող են երևալ առաջին հայացքից: Դրանք, ինչպես պոետիկայի (բանաստեղծական արվեստի) գրեթե բոլոր մյուս հասկացությունները, հայտնաբերել ու համակարգել են հին հույները՝ իրենց գրական հանճարեղ մշակույթի հիման վրա: Այլաբերության բոլոր տարատեսակներին չէ, որ ձեզ կծանոթացնենք մեր զրույցներում. բոլորը կիմանաք, եթե բանասիրությունը ձեր մասնագիտությունը դարձնեք: Իսկ կարևորագույնները պետք է իմանալ՝ անկախ մասնագիտությունից:




ԳՐԻԳՈՐ ՏՅՈՒՏՅՈՒՆՆԻԿ

## Գլուխ երկրորդ

Ութ օր էր արդեն, ինչ գնում էր Կլիմկոն:

Առաջին օրն անցավ թեթև, նույնիսկ ուրախ: Ճանապարհի փափուկ փոշին տաքացնում էր նրա բոբիկ ոտքերը, քեռու բաճկոնի գրպաններում կային սպիտակ չորահացի վեց մեծ կտոր ու աղի համար մի տոպրակ:

Չորահացը ճամփի համար Կլիմկոյին էր տվել Բոչոնոկ պապը՝ կայարանի դեղագործն ու քեռի Կիրիլոյի ընկերը: Բոչոնոկ պապ, այդպես էին անվանում դեղագործին ավանի ու կայարանի բոլոր երեխաները: Նա գիտեր բոլորին, և բոլորն էլ գիտեին իրեն: Ալեհեր, բեղավոր և հաստ ու կլոր, ինչպես իսկական տակառ, դեղագործը սիրում էր առավոտները ման գալ շուկայում լայն, զոլավոր շալվարը հագին, երկար, համարյա ծնկներին հասնող կապույտ վերնաշապիկով, սպիտակ ծոպերով մետաքսե ոլորուն գոտին կապած, ոտքերին՝ մեծ դեղին կոշիկներ: Բոչոնկը ոչինչ չէր առնում, այլ միայն ուրախ ասում-խոսում էր վաճառողների հետ ու թավ ձայնով քրքջում ճերմակ փմփուշացրած բեղերի տակից. «Հու-հու-հո՜ւ: Քխա-քխա-քխա՜: Օ՜, հարգանքներս ձեզ»:

Առավոտյան դպրոց վազելիս Կլիմկոն հաճախ էր ճամփան շուռ տալիս դեպի շուկա, միայն նրա համար, որ պոչի նման գնա Բոչոնոկի ետևից ու լսի նրա այդ հանելուկային խոսքերը. «կուալցեքս», «խինա», «ավսպիրին»:

Մյուս օրը, երբ արդեն քեռի Կիրիլոն չկար, Բոչոնոկ պապը եկավ բարաք՝ Կլիմկոյի մոտ, հաստլիկ ուսը հենեց դռան կողափայտին և, արցունքները սրբելով, նստեց Կլիմկոյի կողքի աթոռին, որը նրա մարմնի ծանրության տակ ախ քաշեց: Հետո իր լայնածավալ շալվարի գրպանից հանեց կարմիր երեսնանոցների մի կապուկ և դրեց սեղանին՝ Կլիմկոյի առաջ:

— Կուզենաս՝ գոնե հաց կառնես: Առ բոլորը: Մեկ է, հիմի սրանք էլ արժեք չունեն... Հետո՝ լավ կլիներ, մի գյուղ գնայիր, կպնեիր մի պառավի, օգնեիր, մինչև էս վատ ժամանակները անցնեին: Ես քեզ ճամփի պաշար կտամ:

Կլիմկոն ասաց, որ կայարանում

Սկիզբը՝ № 6-ում

իրեն քեռու մթերապաժինն են տալիս, այնպես որ կարելի է ապրել: Մանավանդ, շուտով էլ դպրոցի պարապմունքներն են սկսվելու:

— Արդեն էլ չեն սկսվելու,— հառաչեց Բոչոնոկ պապը:—Գերմանացիներն էսօր-էգուց գալու են...

Շուտով գերմանական ինքնաթիռները ռմբակոծեցին կայարանը: Կլիմկոն այդ օրը տղաների հետ գնացել էր ձորակ՝ դիտելու մեր խփված ինքնաթիռը և հեռվից տեսնում էր ինչպես են ռումբերը թափվում դեպոյի վրա, վագոնների մեջ, ինչպես է դանդաղորեն տապալվում ջրմուղ աշտարակը, իսկ օդում ծխի ու բոցերի մեջ սահմրռկալի վայրում էին երկաթգծի բեկորները: Ռումբ էր ընկել նաև բարաքի վրա, ավերել, ցիրուցան արել ամեն կողմ, իսկ պատերի և միջնապատերի մնացորդները այրվեցին Կլիմկոյի աչքերի առջև՝ արագ, տաշեղի նման: Հրդեհը ոչ ոք չէր հանգցնում, որովհետև այրվում էր կայարանն ամբողջ, այրվում էին դեպոն և հանքահորը, իսկ երկու շոգեքարշ, որ հասցրել էին հեռանալ գերեզմանոցի կողքի հրապարակը, աղերսագին ու տխուր սուլում էին երկու տարաձայն սուլոցներով:

...Արևն արդեն բարձրացել էր և տաքացնում էր Կլիմկոյի մեջքը, բայց գետինը սառն էր և դրանից տուժել էին ոտքերի ներբաններն ու փայտացել: Երբ նրանք սառչում էին այնքան, որ սկսում էին այրվել և այլևս հնար չկար քայլելու, Կլիմկոն նստում էր հենց ճանապարհի մեջտեղն ու ձեռքերով տրորում ոտքերը, տաքացնում իր շնչով՝ մոտեցնելով բերանին մեկ մի, մեկ էլ մյուս ոտքը, և նորից տրորում:

Առջևում նշմարվում էր անտառը, լոկ ծառերի կատարներով: Զոր էր այնտեղ թե ինչ: Կամ գուցե ինչ-որ ցածրադիր գյուղ: Կլիմկոն նկատեց, որ կանաչ-դեղին կատարներից վեր բարակ շիթերով ծուխ է բարձրանում: Այն չէր լուծվում օդում և չէր էլ թեքվում մի կողմի, ինչպես դա լինում է քամուց, այլ միայն հազիվհազ օրորվում էր վաղորդյան անդորրում: Կլիմկոն ուրախացավ, տեսնելով ծուխը, և գնաց այն կողմը:

Խարույկը մարմրում էր ճամփից ոչ հեռու, քաղած կարտոֆիլի մարգում,



դեղնած կաղամախիների ու թփերի մեջ: Մարգը մեծ չէր: Նրա կողքին գոյացել էին հին, մամուռից սևացած քարակույտեր. երևում էր, ինչ-որ մեկը մի օր կամ երկու օր չէր, որ քրտինք էր թափել այդտեղ, հողը քարերից ազատելու և մի երկու դույլ կարտոֆիլ ցանելու համար: Խարույկի մոտ ճըխըլտված փրերի մի կույտ կար այրված տերևների հետ խառը և նկատելի էին ձեռնասայլի խոր անվահետքերը: Կարտոֆիլը, հավանաբար, երեկ երեկոյան էին հավաքել, որովհետև հողը ցանքափոսերում դեռ չէր չորացել: Նա մահակով փորփրեց խարույկը, այնտեղից դուրս գլորվեցին երկու ած-

խի պես սև կարտոֆիլ: Դրանց կլեպն այնպես էր այրվել, որ պոկվել էր վարդագույն ու բուրումնավետ միջուկից: Կլիմկոն արագ ծամեց կարտոֆիլները, նույնիսկ մոռանալով, որ մոտն աղ կա: Իսկ հետո այնպես ուտել ուզեց, որ արցունքներ դուրս ցայտեցին աչքերից: Նա մեկ-մեկ թափ տվեց բաճկոնի գրպաններից չորահացի փշրանքները, թեթև փչեց քիստերն ու մղեղները և

— Մե՞կ,— ուրախ ձայնեց նա, գտնելով առաջին կարտոֆիլը:

Մինչև ճաշ Կլիմկոն փորեց հանեց հիսունյոթ կարտոֆիլ՝ մեծ, փոքր ու բոլորովին մանրիկ: Տասներկու ամենամանրերը նա խորովեց: Ուտում էր դանդաղ, թաթախելով աղի տուփի մեջ, դանդաղ, որպեսզի երկար ուտի, և փորն էլ չցավի: Թե չէ շատ էր ալոճ կերել և սիրտը խառնում էր: Պետք է

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*



էլի մի քիչ համը տեսավ: Չորահացի վերջին կտորները նա կերել-պրծել էր դեռ երեկ առավոտյան և մինչև այժմ բերանը մի փշուր չէր դրել: Ճիշտ է, անտառակում՝ ճանապարհի կողքին ալոճենու մի առատ թուփ պատահեց: Կլիմկոն քաղեց մինչև վերջին պտուղը, այնքան կերավ, որ սիրտը խառնեց:

Կլիմկոն խարույկից դեն տվեց կարտոֆիլի փրերը, փչեց-բորբոքեց կրակը, և երկար տաքացնում էր ոտքերը՝ երբեմն մտցնելով ոտքը բոցի մեջ:

Հետո վերցրեց մահակը, որով տակնուվրա էր արել կրակը, և քայլեց կարտոֆիլի մարգով փորփրելով փոս փոսի ետևից:

քիչ-քիչ ուտեր:

Ժամփա ընկնելուց առաջ նա մի անգամ էլ լավ տաքացրեց ոտքերը, ուսը գցեց կարտոֆիլի տոպրակը և շարունակեց ճանապարհը ձորակով:

Ծուտով Կլիմկոն տեսավ մեծ քաղաքը հովտի մեջ, կանգ առավ, դիտեց երկար, կկոցելով աչքերն արևից, որն արդեն երգում էր իրիկվա իր մեղմիկ, բոսորաթույր երգը: Կլիմկոն նայեց շուրջը. հարկավոր է մնալ գիշերելու, թե չէ քաղաքում ո՞ւր դնես գլուխդ: Հեռվում, դաշտի մեջ, մի տաս գոնի վրա նա նկատեց չոր խոտի թե ծղոտի մի բարդոց և թեքեց ճանապարհը...





*«Անհաշտություն դասարանում... Ինչո՞ւ»*

# Ո՞Վ ԷՐ ԻՐԱՎԱՑԻ

Աշակերտները հավաքվել էին պատուհանի մոտ և աշխույժ զրուցում էին, իսկ Նունեն կանգնած էր առանձին: Հպարտ քայլերով նրան մոտեցավ Արտակը և ձեռքի տետրը դնելով նստարանի վրա, հարցրեց Նունեին.

— Գրե՞լ ես տնային աշխատանքդ:

— Այո՛,—պատասխանեց Նունեն:

— Նունե՛, տո՛ւր արտագրեմ, չեմ հասկացել:

— Ուզո՞ւմ ես, բացատրեմ:

— Չէ՛, չեմ ուզում, տո՛ւր արտագրեմ:

— Բայց... բայց չէ՞ որ...

— Էլ ի՞նչ բայց, եթե չես ուզում տալ, այդպես էլ ասա:

— Բայց չէ՞ որ արտագրելուց օգուտ չկա:

— Խորհուրդդ քե՛զ պահիր,—նետեց Արտակը և հպարտ-հպարտ դուրս գնաց:

Հանրահաշվից Արտակը «երկուս» ստացավ: Հաջորդ դասամիջոցին Նունեի աչքերի մեջ արցունքներ կային: Դասարանի տղաները խռովել էին նրանից: Բոլորը ուրախ ծիծաղում էին ու կատակում, միայն Արտակն ու Նունեն էին տխուր: Արտակը տխուր ու հուզված էր իր «երկուսի», իսկ Նունեն՝ իր ընկերների վատ վերաբերմունքի համար:

*ՆԱԻՐԱ ԳԵՎՈՐԳՅԱՆ*
*Հոկտեմբերյանի շրջ., գյուղ Նոր-Արտագերս, 9-րդ դաս.*

# ԽՌՈՎՈՒԹՅՈՒՆ

Առաջին դասարանից սկսած մենք հարգում, սիրում էինք միմյանց: Բայց 7-րդ դասարանում մի քանիսի պատճառով իրար խառնվեց մեր ընկերասեր դասարանը: Այդ աշակերտները ընկրսեցին խանգարել դասերը, փախչել դասերից: Եվ ընկավ մեր դասարանի պատիվը: Որոշեցինք կարգի հրավիրել նրանց, չկարողացանք: Դասարանը բաժանվեց երկուսի, դասարանում առաջացավ խռովություն:

*Մ. Վ.*
*Ջարենցավան, 7-րդ դաս.*




ԱՆՈՒՇԱՎԱՆ ԶԵՎԿԱՆՅ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Շատ ժամանակներ առաջ, Մհերիկ անունով մի տղա կար, մի սիրունիկ, կլորիկ-գլորիկ մանչուկ, որը պլստան աչուկներ ուներ և կեռասի պես կարմիր, միշտ կիսաբաց ու թաց շրթունքներ:

Ահա այս Մհերիկը ինչքան էլ ջանում էր լավ սովորել, դաս պատասխանելիս միշտ մի սխալ էր անում կամ միշտ ծիծաղելի բան էր ասում:

Մի անգամ կրոնի դասին տեր Արթինը նրան տվեց այսպիսի մի հարց.

— Նոյ Նահապետը, `զավա՛կս, ուներ երեք որդի՝ Սեմը, Քամը, Հաբեթը... Ասա՛ ինձ, աստծո՛ գառնուկ Մհեր, ո՞վ էր նրանց հայրը:

Մհերիկը մտածեց, մտածեց, պատասխանել չկարողացավ:

Տեր Արթինն ասաց.

— Վաղը, որդի՛ս, դարձյալ կըհարցնեմ: Տանը պատրաստի՛ր, խնդրում եմ, դասդ:

Մհերիկը եկավ տուն, և տանեցիք նրա տեսքից իսկույն հասկացան, որ էլի ինչ-որ բան է եղել դպրոցում:

Հայրը հարցրեց.

— Հը՛, ինչպե՞ս անցավ դասը:

Մհերիկը պատմեց:

Հայրիկը նախ տխրեց մի քիչ, հետո ոնց որ թե մի քիչ էլ բարկացավ, ի վերջո բարձր ծիծաղեց, ասաց.

— Հապա ուշադի՛ր լսիր և պատասխանելուց առաջ մտածի՛ր... Մեր հարևան ջրաղացպան Մանասն ունի երեք որդի...

Մհերիկն, իհարկե, չհամբերեց (ա՞յդ էր պակաս), վրա տվեց.

— Հովո՞ն, Խեչո՞ն, Սի՞մը...

— Ճիշտ է, ապրես,—խնդալով ասաց հայրիկը,— Հովհաննեսը, Խաչատուրը, Սիմոնը: Դե հիմա պատասխանի՛ր. ո՞վ է նրանց հայրիկը:

— Մանաս քեռին,—իսկույն պատասխանեց Մհերիկը և հպարտությունից նույնիսկ փքվեց մի քիչ:

Հաջորդ դասին տեր Արթինը առաջինը, իհարկե, Մհերիկին կանչեց դաս պատասխանելու և կրկնեց նախորդ անգամվա հարցը.

— Դե՛հ, ո՞վ էր, այսպիսով, Սեմի, Քամի, Հաբեթի հայրը... Ասա՛ տեսնեմ:

— Մեր հարևան ջրաղացպան քեռի Մանասը,—վստահ ու համարձակ վրա բերեց Մհերիկը:

Նոր տարուն երեխաներին նվերներ բաժանող բարի Փերիների ունեցվածքը երեք տեսակի է՝ ցախավելը, պարկը և ծակ կոշիկները: Շատերը նախընտրում են Փերիների ունեցվածքի այլ բաժանում: Դա նրանց իրավունքն է: Բայց ես իմ ընդունած կարգի ճշմարիտ լինելու մեջ համոզված եմ և անցնում եմ ասածս երեք տեսակներից յուրաքանչյուրի վերլուծությանը: Կամենում եք թե չեք կամենում, ուզածս անում եմ:

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

# ԲԱՐԻ ԵՎ ՉԱՐ ՓԵՐԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ

(ՀԵՔԻԱԹ-ՏՐԱԿՏԱՏ)

Առաջին մաս

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



## ՑԱԽԱՎԵԼԸ

Հունվարի վեցից հետո Նավոն հրապարակի Փերին ևս մեկնում է տոնական ճանապարհորդության: Հեծնում է ցախավելն ու թռչում ուրիշ մոլորակներ՝ Լուսին, Մարս, Անտարես, թռչում է Անդրոմեդայի միգամածության միջով, գնում Արեգակնային համակարգությունից էլ դենը գտնվող մոլորակները: Եվ ապա վերադառնում է կրկին Փերիների Աշխարհը: Տանը նրա առաջին գործն է լինում ջարդ տալ քրոջը նրա համար, որ սա հատակը չի լվացել, կահույքի փոշին չի սրբել և վարսավիրանոց չի գնացել: Նավոն հրապարակի Փերու քույրն էլ Փերի էր, միայն թե նա չէր սիրում ճամփորդել, գերադասում էր նստել տանը, իր սենյակում, շոկոլադ անուշ անել և սառնաշաքար ծծել: Մի խոսքով, նա ծույլ էր ավելի, քան քսանչորս Անբան Հուռի միասին վերցրած:

Քույրերը ցախավելի խանութ ունեին: Նրանցից էին ցախավել գնում ողջ աշխարհի՝ Օմենի, Թեջոյի, Էմելայի և Րիվիզոնդոլոյի փերիները: Փերիները հազարավոր են, մութը նրանք մաշեցնում են ավելով, այնպես որ քույրերի առևտրի գործը վատ չէր գնում:

— Վերջերս մեր ավելները վատ են վաճառվում,— ասաց ճամփորդել

սիրող Փերին քրոջը,—շոկոլադ խժռելիս գլխումդ որևէ օգտակար միտք չի՞ ծնվել:

— Միանվա՛գ ծախի վերջանա: Անցյալ տարի միանվագ ծախելուց պակաս օգուտ չունեցանք, քան կլոր տարին հատ-հատ ծախելուց:

— Մտածիր ավելի՛ խելքը գլխին մի բան, թե չէ քո օրվա սառնաշաքարը կիսով չափ կպակասեցնեմ:

Նստակյաց Փերին ուժեղ մտածեց ու թե՝

— Կարելի է մինի-ավելը հայտաբարել մոդայի վերջին ճիչ:

— Մինի-ավել ասելով ի՞նչ ես հասկանում:

— Շատ կարճ ավել:

— Իսկ դա աղմուկ-աղաղակ չի՞ առաջացնի:

— Դե կարող է մի որևէ կեղծ բարեպաշտ պառավի դուրը չգալ ու բարկանա, բայց երիտասարդ Փերիների խելքը նոր ավելի վրա կգնա:

Եվ, իրոք, մինի-ավելը ֆուրոր հանեց: Սկզբում տարիքով Փերիները, ճիշտ է, ջարդոտեցին այն ու նետեցին, թերթերին բողոքներ գրեցին, կազմակերպեցին ցույցեր: Իսկ հետո լուսամուտների վարագույրները քաշելով, թաքուն սկսեցին մինի-ավելները փորձել: Եվ մի գեղեցիկ օր նրանք տանից դուրս թռան մինի-ավելներով:

Շատ չանցած, մինի-ավելների առուծախն էլ պակասեց:

— Մի նո՛ր բան մտածիր—ասաց ճամփորդող Փերին քրոջը,—թե չէ փող չեմ տա կինոյի տոմս առնես:

— Է՛, անընդհատ մտածելուց գըլուխս ուռավ:

— Նոր բան չմտածես՝ այսօր կինո չես գնա:

— Ե՛կ հիմա էլ մաքսի-ավելը ռեկլամիր:

— Այդ ի՞նչ բան է:

— Շատ երկար ավել է: Սովորականից երկու անգամ ավելի երկար է:

— Հը՛մ, շատ չի՞ լինի:

— Իհարկե, շատ կլինի, դրա համար էլ մաքսի-ավել կոչի, և հաջողությունն ապահովված կլինի:

Այդ օրը, երբ բոլորովին դեռատի մի Փերի՝ անուշիկ, նազելի, հայտնըվեց քաղաքում մաքսի-ավելով, մնացած բոլոր Փերիները նախանձից քիչ մնաց մեռնեին: Քսանյոթ Փերի ուշաթափվեցին, երեսունյոթը ջղային նոպա ունեցան, իսկ քառասունինը հազար Փերի հեկեկոցը դրին: Իրիկվա կողմ մաքսի-ավելների խանութում բազմահազար կիլոմետրանոց հերթը Հռոմից Արսիցիո հասավ:

Հետևյալ տարին ճանապարհորդող Փերու քույրը մի տուփ շոկոլադի դիմաց հորինեց միդի-ավել: Ճանապարհորդող Փերին հարստացավ և փոշեկուլի խանութ գնեց:

Եվ այդտեղից էլ սկիզբ առան բոլոր դժբախտությունները: Փերիներն սկսեցին թռչել ոչ թե ավել, այլ փոշեկուլ հեծած: Թռչելիս փոշեկուլը կուլ էր տալիս ամպ, գիսաստղ, մեծ ու փոքր թռչուններ, պարաշյուտիստների, օդապարուկներ, երկնաքարեր, բնական և արհեստական արբանյակներ, չըղջիկներ և լատիներենի ուսուցիչներ:

Մի շշմած-շշկլած Փերի կուլ տվեց ինքնաթիռ՝ իր բոլոր ուղևորներով: Հետո ստիպված եղավ նրանց տանել իրենց տներն ու մեկիկ-մեկիկ իջեցնել վառարանի ծխնելույզներով: Պարզվեց, որ փոշեկուլը տունը մաքրելու համար լավ է, սակայն օդային թռիչքների համար ավելի լավ է դարձյալ հին, հնուսաի ավելը:



# ՊԱՐԿԸ

Մի անգամ Փերին չի նկատում, որ նվերների պարկը ծակ է: Քաղաքների և գյուղերի վրայով թռչելիս չի նկատում, որ նվերները երկնքից ցած են թափվում, ընկնում ամենաանսպասելի տեղեր: Խաղալիք էլեկտրական գնացքը ընկնում է սուրբ Պետրոս տաճարի գմբեթին և կատաղի արագությամբ սկսում պտտվել:

Վատիկանի եպիսկոպոսը պատուհանից նայում է դուրս և տեսնում էլեկտրական գնացքը գմբեթի վրա խենթի պես վազվզում է:

Սարսափից եպիսկոպոսին տեղնուտեղը սառը քրտինք է պատում:

— Կա-չկա այդ դև՞ն է, աշխարհի վերջը եկե՞լ է,— բղավում է նա:

Մի ուրիշ եպիսկոպոս նայում է պատուհանից, ստուգում երկաթուղային չվացուցակն ու դժգոհ տարուբերում գլուխը.

— Ավելի շուտ սա Հռոմ-Վիտերբո ճեպընթացն է, բայց, երևում է, ուրիշ գծի վրա է ընկել:

Մի տիկնիկ ընկնում է գայլի որջի մոտ:

Գայլերն իսկույն երազանքների գիրկն են ընկնում:

— Սա այն դեպքն է, ինչ որ Ռոմուլի և Ռեմինն էր՝ փառքը մեզանից մի թաթ պարզելու հեռավորության վրա է, փոքրիկին կմեծացնենք, չափահաս որ դառնա, կորոշի քաղաք հիմնել: Մեր պատվին կբարձրանան անհամար արձաններ, և քաղաքագլուխը, չիմանալով ինչպես ազատվի դրանցից, կսկսի նվիրել հուշակավոր հյուրերին:

Գայլերը երկար տարիներ հոգատար խնամեցին փոքրիկին, սեփական կաթով կերակրեցին: Բայց փոքրիկը, չգիտես ինչու, չմեծացավ, դեռ ընդհակառակը՝ փոքրացավ, կորցրեց կոշիկները, մազերը, աչքերն ու մաշվեց:

Գայլն ու գայլուհին շատ չարչարվեցին և փառքի համը այնպես էլ չառան: Բայց նրանք գիտեին, որ այնուամենայնիվ իրենց բախտը բերեց, գոնե զոհ չդարձան աներևակայելի չափերի հասած մասնագետ և սիրող որսորդներին:

Մի ջրաքիսի մուշտակ (կոմենդատոր Մամբրետիի նվերը իր ընկերուհուն) ընկնում է Սարդինիայի վրա, հոտը արածացնող հովվից երկու քայլ հեռու:

Հովիվը չգիտես ինչու չի ճչում՝ «Չար դևերը, չար դևերը», և գլուխն առած փախչում: Այլ հագնում է մուշտակն ու իսկույն տաքանում: Փերին հայելու մեջ տեսնում է նրան ետևի կողմից, վերադառնում է, վայրընթաց խոյանում հոտի վրա, և այն է հասնելու էր գետնին, փոշմանում է.

— Արդար որ լինենք, մուշտակն ո՞ւմ է ավելի հարկավոր, հովվի՞ն, թե՞ այն տիկնոջը: Նա առանց այն էլ երկու մուշտակ ունի, նաև ավտոմեքենա՝ կոնդիցիոներով: Ինարկե՝ հովվին:

Մի ուրիշ անգամ Փերիները թռիչքից առաջ ընդհանուր իրարանցման, հրաժեշտի, խրատների, ողջագուրանքների, հազի ու լացի մեջ, պարկերը շփոթեցին: Դոմոդոսոլցի Փերին վերցրեց Մասալոմ Բարդայի, իսկ Սարայեվոյի Փերին ձեռքն առավ Ֆրիբուրգ քաղաքի Փերունը, որ գտնվում է Բրիստոլի երկրում: Հետո գլխի ընկան, որ նվերները ճիշտ հասցեներով չեն տանում:

Ի՞նչ կատարվեց դրանից հետո՝ «Դո՛ւ ես մեղավոր», «Չէ, դո՛ւ», «Չէ՞ որ ես քեզ ասացի», «Դու քո տատին ես երևի ասել»: Վրա տվին ու վրա տվին:

— Լաց ու կոծ չանե՞նք,—ասաց վերջապես Հռոմի Փերին:

— Ես որ լաց լինեմ,— ասաց թուխ, սևաչ Փերին,— դեմքիս գրիմը կավերվի:

— Ես ուզեցի ասել, որ մեզ մի բան է մնում միայն՝ նախորդ հասցեներով գնալ, անհնկատելի հավաքել նվերները և նորից վերաբաժանել ըստ պատկանելույն:

— Ոչ էլ կանե՛մ,—բացականչեց թուխ Փերին,—ես ժամադրված եմ սիրեցյալիս հետ: Ի՞նչ պետքս է, թե ում պատկանելիքը ում է ընկել:

Շուտ եկավ ու գնաց: Մյուս Փերիները հառաչեցին և կրկին հեռավոր ճամփեքը բռնեցին: Ավա՜ղ, ուշ էր: Երեխաներն ամեն տեղ արդեն արթնացել էին և ուրախ-ուրախ նայում էին նվերները:

— Աստվա՜ծ իմ, ինչպիսի՜ դժբախտություն,—բացականչեցին Փերիները:

Բայց ոչ մի դժբախտություն էլ տեղի չէր ունեցել: Երեխաներին նվերները դուր էին եկել, ոչ ոք չբողոքեց: Վիեննայի երեխաներին բաժին էր ընկել Նեապոլի երեխաների նվերները: Բայց միևնույն է, նրանք սրտանց ուրախ էին:

— Ես հասկանում եմ,—ասաց Հռոմի Փերին,—աշխարհի բոլոր երեխաները իրար նման են և սիրում են միևնույն նվերները: Ահա թե որն է գաղտնիքը:

— Վե՛րջ տուր: Իդեալիստ եղել, իդեալիստ էլ մնում ես,—ասաց քույրը, մի գավաթ «Պորտվեյն» լցնելով իր համար,—պարզապես ամբողջ աշխարհում երեխաներին վարժեցրել են միևնույն խաղալիքներին: Այդ բոլոր խաղալիքներն արտադրում են միևնույն խոշոր մոնոպոլիստները: Երեխաները կարծում են, թե իրենք են խաղալիքներ ընտրում, մինչդեռ իրենք ընտրում են այն, ինչ արդյունաբերողները նախապես արդեն ընտրել են նրանց համար:

Դժվարանում եմ ասել, թե քույրերից որն էր իրավացի: Գուցե՝ երկուսն էլ:



# ԾԱԿ ՈՏՆԱՄԱՆՆԵՐ

Բոլոր երեխաները գիտեն, որ բարի Փերիների ոտնամանները ծակ են լինում: Երեխաներ կան, որ դրա վրա ծիծաղում են, որովհետև ծակ ոտնամանի միջից բութ մատը դուրս է ցցվում: Երեխաներ էլ կան, որ տխրում են դրա համար և գիշերները չեն քնում:

— Խե՜ղճ Փերի: Նրա ցածի վերջավորությունները կսառչեն, — ցածի վերջավորություն քաղաքավարությամբ անվանում են ոտքերին:

Երեխաների մեծ մասը խղճում է աղքատ Փերիներին: Նրանք գրում են թերթերում, ռադիոյին, առաջարկում են փող հավաքել և աղքատ Փերիների համար նոր կոշիկներ գնել: Խաբեբաների մի խումբ լսում ու տնից տուն է անցնում Տուրանում, Միլանում և Ֆըլորենցիայում (չգիտես ինչու քիթները Նեապոլում ցույց չեն տալիս) և անօրինական կերպով փող են հավաքում իբրև թե Փերիների օգտին:

Խաբեբաներին հաջողվում է հավաքել երկու հարյուր տասներկու միլիոն լիրա, որից հետո փախչում են Շվեյցարիա, Հոնկոնգ, Սինգապուր, քեֆ քաշելու:

Իսկ փերիները առաջվա պես շարունակում են ման գալ ծակ ոտնամաններով: Շատ երեխաներ, տոնի նախորդ երեկոյան, այն գուլպաների կողքին, որոնց մեջ Փերիները նվերները էին դնում, գուլպաներ թողեցին այս մակագրությամբ՝ «Փերիների համար»: Գուլպաների մեջ դրված էին տարեց տղամարդանց նոր, գեղեցիկ կոշիկներ: Համարյա բոլոր կոշիկները սև գույնի էին, հանդիպում էին նաև մուգ շագանակագույն և սրճագույն, բարձրակրունկ կամ ցածրակրունկ, ինչպես և անկրունկ: Ճարմանդով կամ թելերով:

Հայտնի չէ ինչպես, բայց Վիչևանոյի Փերին այս բանը տեսավ՝ մյուս փերիներից վաղ: Եվ ի՞նչ արեց: Զարթեցուցիչը մեկ ժամով առաջ գցեց և գերձայնային արագությամբ ամենից շուտ հասավ գետնին: Բեռնատար ինքնաթիռը բերնեբերան լցրեց նոր կոշիկներով և վերադարձավ Փերիների երկիրը, ինքն իր արածից շատ գոհ:

Փերիագետ մասնագետները երկու տարբեր վերջի են հանգեցնում այս պատմությունը:

Բարի մասնագետները պնդում են, որ Վիջևանոյի Փերին տեսնելով դիզված նոր ոտնամանների սարը, մտածել է, թե ինչքա՜ն մարդ է դեռ երկրի վրա ոտաբոբիկ քայլում: Նա նորից նոր կոշիկները լցրել է ինքնիթիռ և թռել է՝ բաժանելու դրանք աղքատ կանանց: Նրա մոտ կոշիկներ են մնում նաև աղքատ տղամարդկանց համար: Թփերի ու քարերի մեջ ոտաբոբիկ քայլելու փոխարեն ավելի լավ չի՞ կանացի կոշիկներ հագնել: Ճիշտ չէ՞:

Չար, անսիրտ մասնագետները, ընդհակառակը, պնդում են, որ Վիջևանոյի Փերին կոշիկի խանութ է բացել Փերիների երկրում և երեխաների նվիրած ոտնամաններով անհաշիվ փող է դիզել: Նրա եկամուտը անչափ շատ է, եղել, որովհետև ոտնամանները ձեռք էր բերել բոլորովին ձրի և հարկեր, տուրքեր չէր վճարել:

Ձեռք բերած փողով նա գնել է ութանիվ ավտոմեքենա և ոսկի տրամվայ:

Ես մասնագետ փերիագետ չեմ, ո՛չ շատ չար, ո՛չ շատ բարի, և իմ կարծիքը կարևոր չէ:



# ՎԵՐՋԱԲԱՆ

Երբ ես մասնագետին ցույց տվեցի իմ գրվածքը Փերիների երեք տեսակ ունեցվածքի մասին, նա ծիծաղելով ասաց.

— Ամեն ինչ հրաշալի է: Բայց դուք մոռացել եք ամենակարևորը:

— Այսի՞նքն:

— Մոռացել եք, որ Փերիները նըվերներ են տանում միայն լավ երեխաներին: Իսկ վատերի, խղճուկների կողմը չեն էլ նայում:

Ես տասներեք վայրկյան լուռ նայեցի նրան, ապա ասացի.

— Ո՞րն եք ձեզ համար լավ համարում. ա՛յն, որ ձեր ականջը կտրե՞մ, թե՞ կծեմ ձեր քիթը:

— Ներեցեք, ինչ ասացի՞ք:

— Ո՞րն եք ուզում, հովանոցի կոթով խփե՞մ ձեր գլխին, թե՞ մի կիլոգրամ սառույց խոթեմ ձեր ծոծրակը:

— Ինչպե՞ս եք համարձակվում վիրավորել ինձ, ինդուստրիայի կավալերիս և կապիտանիս:

— Իսկ դուք, հապա, ինչպե՞ս եք համարձակվում պնդել, թե կան վատ երեխաներ: Ծունկի՛ իջեք և ներողություն խնդրեք:

— Ինչո՞ւ վերցրիք մուրճը:

— Ուզում եմ ձեր ճկույթին խփել, եթե չերդվեք, որ երեխաները լավն են: Հատկապես այն աղքատ երեխաները, որոնց անգամ Փերիները նվերներ չեն տանում: Դե, երդվելո՞ւ եք, թե՞ ոչ:

— Երդվում եմ, երդվում եմ:

— Հրաշալի է: Տեսե՛ք, ես գնում եմ՝ առանց ձեզ խփելու: Ավա՜ղ, իմ սիրտը չափազանց բարի է:




# Թե ինչպես Մայեմին ստրկության վաճառեցին



Այն ժամանակ նա տասներկու տարեկան էր: Հայրն ասաց, որ հետը մայրաքաղաք՝ Բանգկոկ է տանելու: Մայեմն անչափ ուրախացավ: Ո՞ր տաիլանդցին չի երազում թեկուզ մեկ անգամ լինել մայրաքաղաքում: Իրենց գյուղում քաղաքի մասին այնքա՜ն հրաշքներ էին պատմում...

Մայեմը չգիտեր, որ հայրը՝ տաիլանդցի աղքատ գյուղացին, իրեն քաղաք է տանում ֆաբրիկատերերին վաճառելու համար:

Գործարքը կայացավ: Հայրը վերցրեց ութսուն դոլլարը, իսկ տերը Մայեմին տարավ հրուշակեղենի ֆաբրիկա: Այսպես աղջիկը ծանոթացավ տարբեր գյուղերից բերված իր բախտակից հիսուն փոքրիկ ստրկուհիներին: Նրանք օրական աշխատում էին տասնհինգ ժամ: Փող չէին ստանում, միայն սնունդ: Եվ քնում էին ֆաբրիկայի երկրորդ հարկում գտնվող մի սենյակում, իրար գլխի լցված, ողջ գիշեր «պատերազմելով» ուտիճների դեմ:

Չորս ամսվա ընթացքում, ինչ Մայեմն աշխատում էր տիրոջ համար, նրա ընկերուհիներից երկուսը մահացան «անհայտ պատճառներից»: Վեցի ոտքերը ծնկած վիճակում երկար մնալուց ջղաձգվեցին: Մայեմն ու իր ընկերուհիները ստիպված են նրանց աստիճաններով քարշ տալ «տանից՝ աշխատանքի» և «աշխատանքից՝ տուն»...

Այսպիսին է տաիլանդցի աղքատ ընտանիքների հազարավոր երեխաների ճակատագիրը: Նրանց ծնողները՝ աղքատ, անգրագետ մարդիկ, հեշտությամբ հավատում են աշխատուժ վարձող գործակալներին (XX դարի իսկական ստրկավաճառներին), կարծելով, որ քաղաքում երեխաները երջանիկ կապրեն:

Սև բիզնեսը ծաղկում է առաջվա պես:




● 1918 թվականին Ամերիկայի Իլլինոյս նահանգում ծնված Ռոբերտ Վեդլոուն դարձավ աշխարհի ամենաբարձրահասակ մարդը: 5 տարեկան հասակում նրա բոյը 163 սանտիմետր էր, 9 տարեկան—192 սանտիմետր, 15 տարեկան—232 սանտիմետր: Վերջին անգամ նրա բոյը չափեցին 1940 թվականի հունիսի 27-ին, նրա մահվանից 18 օր առաջ: Այն 272 սանտիմետր էր:

● Աշխարհի ամենաքիչ տարածված հիվանդությունը կուրու, կամ «ծիծաղի հիվանդություն» կոչվածն է, որով հիվանդանում են միայն Նոր Գվինեայում ապրող ֆուրու ցեղին պատկանող մարդիկ:

Դեռևս ոչ մի դեպք չի եղել, որ այդ հիվանդությամբ վարակվողը առողջանա:

● Հյուսիսային Ամերիկայում աճում է այսպես կոչված «սատանայի ծառը», որի կեղևը պարունակում է մեծ քանակությամբ ֆոսֆոր: Այնքան ուժեղ է ճառագայթում ֆոսֆորը, որ գիշերը այդ ծառի տակ ազատ կարելի է կարդալ:

● Աշխարհի ամենահին քաղաքը Հորդանանում գտնվող Հելիխոնն է, որը հայտնի է Աստվածաշընչից: Հնագետները պարզել են, որ այն գոյություն է ունեցել ինը հազար տարի առաջ և ունեցել է երեք հազար բնակիչ:

● Աշխարհի ամենահին մայրաքաղաքը Դամասկոսն է (Սիրիա): Այն մայրաքաղաք է եղել մեր թվարկությունից առաջ 2-րդ հազարամյակում...

● Ամենափոքր մետաղադրամները երկրագնդի վրա թողարկվել են 1800 թվականին հարավային Հնդկաստանում, նրանք կշռում էին 0,0648 գրամ:

Ամենախոշոր դրամները նույնպես թողարկվել են Հնդկաստանում Շախ-Ջուգանի թագավորության ժամանակ XVII դարում: Մի դրամը կըշռում էր 2—3 կիլոգրամ և արժեր 500 ֆունտ ըստերլինգ:

● Երկրագնդի վրա ամենաշատ երկրաշարժեր տեղի են ունենում Ճապոնիայում: 1959 թվականին, որը համարվում էր «խաղաղ» տարի, այնտեղ գրանցվել է 930 երկրաշարժ, իսկ 1930 թվականին գրանցվել է 5744 երկրաշարժ:

## ԱՆԹԱՌԱՄ ԾԱՂԻԿՆԵՐ

*ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Ես նայում եմ գույնզգույն
Նուրբ ժանյակի նախշերին,
Ուր ծաղիկներն են փարվում
Երկնի կապույտ աստղերին:

Կանցնեն օրերն արևոտ,
Կանցնեն գույները գարնան,
Բայց ծաղիկներն այս շողոտ
Միշտ կմնան անթառամ:




*ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ*

Սա իմ մանկության ճանապարհն է, հեռու աղմուկներից, մեքենաների խելահեղ ճիչերից, մարդկային անցուդարձից։ Այսօր վաղ եմ արթնացել, չեմ շտապում, որոշում եմ գնալ այդ ճանապարհով։

Թեթև-թեթև եմ։ Ուզում եմ անհոգության տալ ինձ։ Թռչունների ու կանաչների մեջ փընտրում եմ ծանոթ պատկերներ։ Սա սարածիտն է՝ դեղին կտուցով և մուգ կարմիր կրծքով, սա ջըրածիտն է՝ սպիտակավուն, երկար պոչով, որ անընդհատ տմտմբում է, երբ կանգնում է գետակի սալաքարերին, սա խուլ ծիծեռնակն է։ Այդ անունը մենք էինք հորինել փոքր ժամանակ։ Նման է ծիծեռնակի, բայց կարճ պոչ ունի և թռչում է անաղմուկ, որովհետև մեր կարծիքով չի լսում։ Սա...

Դեռ չէի որոշել, թե գլխիս վրայով թռչողը ի՞նչ է, երբ անտառի փեշերին տարածված այգիներից անունս լսեցի.

— Նազո՛, Նազո՛...

Կանգնեցի։ Վարսենիկ տատն էր։

— Մեր գառները գըլուխներն առած կորչում են, աղջի՛կ ջան, դու ինձանից թեթև ես, վազի՛ր բալքի հասնես,—դիմում է նա ինձ այնպես, ինչպես դիմում էր տարիներ առաջ, երբ ես փոքրիկ աղջիկ էի, ինքը՝ դարձյալ տատիկ։

— Կարո՞ղ է, քեզ թըվում է, թե ձեր գառների համար եմ առավոտ վաղ այս կողմերն եկել,—ասում եմ, ժպտալով, որ չմատնեմ դժգոհությունս՝ ինձ իմ երանելի մտորումներից շեղելու համար։

— Շատ մի՛ խոսիր, վազի՛ր... կկորչեն, — տարիներ առաջվա իրավունքով ասում է նա։

Նրանց համար ես այն եմ, ինչ որ էի, պարտավոր եմ լսել, թե չէ վաղը ինձ բարև տվող չի լինի, մերոնց լավ գիտեմ, Արփիկի պատմությունը լավ դաս է ինձ համար։

Արփիկը գերազանցով դպրոցն ավարտել էր, գերազանցով համալսարանն էր ավարտել, հետո դարձել ասպիրանտ, թեկնածուական պաշտպանել, ուրախ, զվարթ եկել գյուղ։ Կեսօրին թըթենու ստվերում անհոգ պառկել, չգիտես ի՞նչ էր երազում, մեկ էլ հարևան Բագրատ պապը հևալով գալիս է, թե.

— Արփո՛ ջան, ոչխարները կթող չկա, շուտ հասի՛ր։

— Օ՜ֆ, Բագրա՛տ պապ, չեմ գալիս, ես ոչխար կթող չեմ։

— Բա ի՞նչ ես։

— Գիտնական եմ։

— Շաշ-շաշ դուրս մի՛ տալ, ոչխարները ձեռքից գնում են։ Գիտնական արևի՞դ մատաղ, գիտնականությունդ քաղաքում կանես, վե՛ր կաց։

— Չեմ կարող։
— Վե՛ր կաց։
— Չեմ կարող։
— Վա՛յ, հարա՜մ լինի խմածդ ջուրը, կերածդ հացը։

Այդ օրվանից Բագրատ պապը գյուղով մեկ նրան պարսավելով ման էր գալիս, թե՝ էսպես ու էնպես...

Արփիկի վարմունքը գյուղովի դատապարտում են։ Արփիկը հիմա գիտության դոկտոր է, մերոնց էլ շատ է հարգում, բայց միևնույն է, չեն ներում, որ Բագրատ պապին մերժել է, ոչխարները չի կթել։

Իսկ ես մեր շրջանի միակ գործարանի գլխավոր ինժեներն եմ։ Ուրիշներն ինձ Նազելի Կարպովնա են ասում, մերոնց համար մնում եմ Նազո... Գլուխը քարը՝ թող Նազո ասեն, բայց խաղաղ առավոտվա իմ այս վայելքը չփչացնեն։

Գառներին հասնում եմ, Վարսենիկ տատի պատվերը կատարում և նորից շարունակում իմ կարոտած ճանապարհը։ Խաղաղվում եմ, կրկին սկսում ծանոթ պատկերներ որոնել օդում ու կանաչների մեջ։ Սա ուրցն է, նոր է դուրս եկել, դեռ բուրմունքը տեղը չի եկել։ Ափիս մեջ շոշափում եմ, հոտոտում։ Մանկության բույր է գալիս, երազներս նորոգվում են...



— Պա՜հ, Նազո՛ աղջիկ, էս ո՞ւր,— թփուտներից ելնում է մեր հարեվան Հակոբը,— բարի լո՜ւյս, լույսը քեզ տեսնողի՜ն։

— Աշխատանքի եմ գնում։

— Ոտքո՞վ...

— Սիրտս էսպես ուզեց։

— Միտդ է՞, որ մերդ չէր կարողանում քեզ էշից իջեցնել։ Խեղճ անասունները քո ձեռքից դադար չունեին։ Մի անգամ մեր էշին էնքան էիր քշել, որ հինգ օր տեղից չբարձրացավ։

— Դու էլ ինձ լավ ծեծեցիր հոնի ճիպոտով։ Դեռ տեղերը ցավում են։

— Ի՞նչ օգուտ, չխրատվեցիր... Իսկ հիմա ավտո նստելուց կշտացել ե՞ս։

Մի կերպ բաժանվում եմ նրանից, նորից մենակ շարունակում ճամփաս։

— Հակո՛բ, էդ ո՞ւմ հետ էիր խոսում։

Ծանապարհի եզրին կանաչների մեջ մեր գյուղացիներն իրենց անասուններին արոտի են դուրս բերել։ Ներքևից չէին երևում, բայց հենց հասա բլրի գագաթին, միանգամից երևացին։

— Նազոն է, Նազոն... Էս ո՞ւր է գնում։

Հավաքվում են ու ինձ հարցաքննում։

Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Խնամի՛ Նազո, դու՝ ո՞վ, ոտքով գնալն՝ ո՞վ,— ասում է մեզ հետավոր խնամի եկող մեկը։

— Վախենո՞ւմ ես ավտոյի ոտը կոտրվի՞, որ չես նստում,— մյուս կողմից վրա է բերում ջրի թաղի Վահրամը։

— Գործից ուշանում եմ, ներող եղեք։

Եվ շարունակում եմ ճամփաս։

— Աչքերս լավ չեն ջոկում, աղջի՛, Նազոն չե՞ս,— առջևս հայտնըվում է Կամսար պապը։

— Բարի լո՛ւյս, Կամսա՛ր պապի։

— Բարին արևի՞դ, էդ ո՞ւր։

— Աշխատանքի։

— Հերդ ո՞նց է։

— Շնորհակալ եմ, լավ է։

— Անասունները ո՞ր հանդն է տանում։

— Բա ես գիտե՞մ,— ձայնս երևի կոշտ հնչեց։

— Պապիդ ես քաշել, շուտ ես ջղայնանում։ Գիտե՞ս, որ պապդ իմ ընկերն էր, ոչխարներ էինք պահում։ Ես երկու տարով նրանից մեծ եմ։

— Պապիս ես չեմ տեսել։

— Շատ պախմախ մարդ էր, ինչ գտավ մեռնելու մեջ, որ էդպես շուտ գնաց։

— Ընկերդ էր, համոզեիր՝ չգնար։

— Ես 93 տարեկան եմ, յոթ տարուց հետո կդառնամ հարյուր։ Դեռ ոտքիս վրա եմ։ Տղամարդն ինձ նման կլինի։

Սրան նույնպես թողած՝ շարունակում եմ ճամփաս, մեկ էլ ձորապտնկից, կանաչ խոտի խուրձը թևատակին երգելով դեմս է գալիս Ավետիք քեռին։

— Գնա արի, ման արի, Նազխանումս տուն արի...

Ուրիշ անգամ, ուրիշ տեղ հանդիպեի, կզվարճանայի, հիմա չկարողացա։

— Բարի լո՛ւյս, Նա՛զ աղջիկ։

— Բարի լո՛ւյս, Ավո՛ քեռի, համ էլ՝ ցտեսությո՛ւն։

— Սպասի՛, կանգնի՛... Ես վաղուց քեզ էի ման գալիս։ Պառավի թոշակի գործով մոտդ էի գալու։

Դեմքիս արտահայտությունը նրա դուրը չի գալիս.

— Բա էլ ինչո՞ւ ես էդ ուսումն առել, որ նեղ տեղերիս պետք չգաս։

— Աշխատանքից ուշանում եմ, քեռի՛, կգաս տուն՝ կարգին խոսենք։

— Էս սիրուն հանդերը թողած, ո՞ւր ես վռազում։ Մանուշակը դուրս է եկել, կապույտն ու սպիտակը քո խաթեր համար էսօր կբացվեն։ Չէ՞ որ մեծ պատիվ ես արել, հարգել, էս կողմերն եկել։ Բա՜...

Ճանապարհն արդեն վերջանում է։ Մեր խնուղուց լսվում են մեքենաների աղմուկ ու կանչեր։ Ես ափսոսանքով ետ եմ նայում։ Ինձ թվում է տխուր են նաև կանաչների մեջ ծվարած ուրցն ու խնձորածաղիկը, օդում սուրացող թռչունները։ Ես կարոտով եմ նայում, ուշքս ու միտքս նրանց կողմն է, և սթափվում եմ այս անգամ կողքիս արգելակվող մարդատարի աղմուկից.

— Նազելի՛ քույրիկ, համեցե՜ք, համեցե՜ք...

Վարորդն համարյա թե ուժով ինձ իր խցիկն է քաշում և, մեքենայի շարժիչը նորից գործի դնե֊լուց հետո, հարցնում.

— Մեքենա էր պետք, զանգ տայիր ինձ, ինչո՞ւ ես ոտքով ճամփա ընկել։

— Սիրտս ուզեց այսօր ոտքով անցնել մանկությանս ճամփով։

— Ոտքո՞վ... Խի՞... — քավորիս տղան ինքնագոհ ավելացնում է մեքենայի արագությունը։

Չփորձեցի հասկացնել նրան, որ իր արածն ինձ լավություն չէր։ Կհասկանա՞ր որ...

Շարունակում էի մտովի կարոտով ետ նայել։

Եթե մյունխենյան օլիմպիական խաղերին կարող էին հետևել 500 միլիոն հեռուստադիտող, Մոնրեալինը՝ մեկ միլիարդ, Մոսկվայի օլիմպիական խաղերին կարող են հետևել մեկ ու կես միլիարդ մարդ՝ երկրագնդի բոլոր անկյուններից: 150 կանալներ Մոսկվան կապում են երկրագնդի գրեթե բոլոր անկյուններին: Ցանկացած պահին կարելի է հետևել ու տեղեկանալ այդ տասնյակ խաղահրապարակներում կատարվող մարզական բոլոր իրադարձություններին...





# ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1. Որտե՞ղ է ամռանն ավելի շոգ, հասարակածո՞ւմ, թե՞ ՍՍՀՄ առանձին շրջաններում:

2. Իսսիկ-Կուլ լճի անունը թարգմանաբար նշանակում է «տաք լիճ» (իսսիկ—տաք, կուլ—լիճ), բայց նրա ջրերը սառն են: Ինչո՞ւ է լիճը ստացել այդպիսի անուն:

3. Ո՞ր նեղուցն է միացնում երկու ծով, երկու օվկիանոս, բաժանում երկու թերակղզի, երկու աշխարհամաս և երկու պետություն: Որո՞նք են դրանք:

4. Ինչպե՞ս է կոչվում երկրագնդի ամենամեծ սառցադաշտը, ինչքա՞ն է նրա տարածքը:

5. Որո՞նք են աշխարհի գաճաճ պետությունները, ինչքա՞ն է յուրաքանչյուրի տարածությունը և բնակչության թիվը:

6. Ո՞րտեղ է գտնվում աշխարհի ամենաբարձր ջրվեժը, ինչքա՞ն է նրա անկման բարձրությունը:

7. Ո՞րտեղ է գտնվում երկրագնդի ամենաբարձր ստորջրյա լեռնաշղթան, ինչքա՞ն է նրա բարձրությունը:

8. Ինչո՞ւ Արարատյան դաշտի ստորգետնյա ջրերը ստացել են «Արտեզյան ջրեր» անունը:

*(Պատասխանները տես 42 էջում)*



# Պատանի հանդիսատեսի թատրոնը 50 տարեկան է

Հայաստանում սովետական կարգերի հաղթանակից հետո մեր ժողովրդի կյանքում սկիզբ առած համընդհանուր վերածնունդի դրսևորումներից մեկն էլ Երևանի ՊՀԹ-ի հիմնադրումն է, որ տեղի ունեցավ 1929 թ. նոյեմբերի 29-ին։

Թատրոնի հիմնադիր գործիչներն էին նշանավոր արվեստագետ Տ. Շամիրխանյանը, դերասաններ Ն. Մանուչարյանը, Վ. Միրզոյանը, նկարիչ Մ. Արուտչյանը, ռեժիսորներ Ա. Աղասյանը, Ս. Քոչարյանը, պատանի հերոսների ճանաչված ու սիրված դերակատար Վ. Մուրադբեկյանը և ուրիշներ։ Այս թատրոնի անվան հետ կապված են նաև մեծահամբավ ռեժիսորներ Լ. Քալանթարի, Ա. Գուլակյանի, Վ. Աճեմյանի, դերասան-դրամատուրգ Մ. Ջանանի, շատ նշանավոր կոմպոզիտորների ու նկարիչների անուններ, որոնք իրենց շոշափելի ավանդը ներդրեցին թատրոնի զարգացման ճանապարհին։

Հիմնադրումից կարճ ժամանակ անց, թատրոնի ստեղծագործական կազմը համալրվեց դերասանական նոր աչքի ընկնող ուժերով՝ Պ. Սանթրոսյան, Ա. Ղազարյան, Պ. Գևորգյան, Է. Ամիրբեկյան և դարձյալ ուրիշներ, որոնք իրենց ուսերին առան թատրոնի խաղացանկի ծանրությունը, թատրոնի հետ բարձրացան, դարձան ստեղծագործական խմբի հիմնական դեմքերը։ Շուտով թատրոնի համբավը դուրս ելավ մեր հանրապետության սահմաններից։ 1940 թ. մոսկովյան ստուգատեսի օրերին մայրաքաղաքի թատերական միտքը, մոսկովյան հանդիսատեսները բարձր գնահատեցին թատրոնի ստեղծագործական ճշմարիտ սկզբունքը՝ ռեալիստական, հոգեբանական արվեստի հունով ընթանալու ակնհայտ կարողությունը։

Թատրոնը նոր միայն ոտք էր դրել երկրորդ տասնամյակի սեմին, երբ բռնկվեց պատերազմը։

Բեմ բարձրացան ռազմահայրենասիրական ու պատմահեղափոխական պիեսներ։ Թատրոնը արձագանքեց շիկացած հերոսական օրերին, փառաբանեց արդարության ու բանականության հաղթանակը, լույսի և կյանքի հավերժությունը։ Ավա՜ղ, ռազմաճակատից չվերադարձավ սիրված, փառաբանված դերասան Վազրիկ Ամիրբեկյանը, որն իր անցած զինվորի ուղին նույնպես փառքով էր պսակել։

Պատերազմական և ետպատերազմյան տարիներին թատրոն եկան նոր ուժեր, գեղարվեստաթատերական ինստիտուտի շրջանավարտներ Մ. Սի-

մոնյան, Է. Վարդանյան, Հ. Ղափլանյան, Վ. Արաքսմանյան, Գ. Չալիկյան, Գ. Ստամբոլցյան, Ն. Դալլաքյան, Ն. Չալիկյան, Ի. Ղարիբյան, Է. Էլբակյան, Ջ. Տեր-Կարապետյան, Խ. Նազարեթյան... Նրանց հետ և Մարուսյա Թամրազյանը՝ պատանի հերոսների չգերազանցված դերակատարը, որն այնքան շուտ հեռացավ կյանքից։

Տ. Ծամհրխանյանից հետո թատրոնի գեղարվեստական ղեկավարի պարտականությունները ստանձնեց Հ. Ղափլանյանը։ Այս թատրոնում ձևավորվեց նա իբրև արվեստագետ, այստեղից էր, որ սկիզբ առավ ՍՍՀՄ ժողովրդական արտիստի բեղմնավոր ուղին։

Թատրոնը իր գոյության տարիներին բեմ է հանել հայ, ռուսական և համաշխարհային դասական ու ժամանակակից թատերգուների նշանավոր շատ ստեղծագործություններ։ Թատրոնի լիակատար հասունության վկայությունն էր Վ. Ի. Լենինի գեղարվեստական կերպարի մարմնավորումը։ Ծատրովի «Հանուն հեղափոխության» պիեսի բեմադրության մեջ Լենինի դերը շատ նուրբ արվեստով խաղաց Ա. Ջիգարխանյանը։

Վերջին երկու տասնամյակները սերտորեն կապված են թատրոնի գլխավոր ռեժիսոր, ժողովրդական արտիստ Ջ. Տատինցյանի և գլխավոր նկարիչ Գ. Վարդանյանի համատեղ գործունեության հետ։ Թատրոնն համալրվել է օժտված նոր երիտասարդ դերասաններով՝ Գ. Տրդատյան, Ա. Սանթրոսյան, Ս. Չալոյան, Ա. Գասպարյան, Փ. Կոզակյան...

Կես դար պատանի հանդիսատեսների շատ սերունդներ են թատրոնից իրենց հետ տարել լավն ու բարին, գեղեցիկն ու ազնիվը, և կյանքի մեծ ճանապարհ ելել իբրև մեր հայրենիքի լիարժեք քաղաքացիներ։

*ԳԵՎՈՐԳ ԱԲԱՋՅԱՆ*





10,5 հազար տեղանոց փոքր մարզահրապարակը վոլեյբոլիստների մըրցատեղն է։ Ջրագնդակի ու լողի սիրահարներին կընդունի 10 հազար տեղանոց լողավազանը։ Համալսարանի մարզադահլիճում կմրցեն վոլեյբոլիստուհիները...



Լուժնիկիում է գտնվում նաև 14 հազար տեղանոց սպորտի պալատը, որ մարմնամարզության ու ձյուդոյի մրցումների վայրն է։



Միչուրինի պողոտայի շրջանում կառուցված օլիմպիական ավանում, կամ ինչպես անվանում են հաճախ՝ հանգստի կենտրոնում, վեր են խոյացել տասնվեց հարկանի շենքեր։



# ԵՐԲ ՎԵՐՋԱՆՈՒՄ Է ԽՈՍՔԸ, ՍԿՍՎՈՒՄ Է ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ

ՀՍՍՀ վաստակավոր արտիստուհի, միջազգային մրցույթների դափնեկիր, դաշնակահարուհի ՍՎԵՏԼԱՆԱ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆԸ սիրով հանձն առավ գրել մեր ամսագրի համար զրույցների շարք երաժշտության մասին, որը և այս համարից սկսում ենք տպագրել։

## 1. Խոսք երաժշտության մասին

Հանրահայտ միտք է. «Երբ վերջանում է խոսքը, սկսվում է երաժշտությունը»։ Մարդկային հոգու մեջ արվեստներից ամենաթափանցողը, ամենահուզիչն ու վեհացնողը, թարգմանության կարիք չունեցողը, արվեստներից ամենահասկանալին ու անհասականալին, որի ազդեցության գաղտնիքը Օրփեոսի առասպելական ժամանակներից սկսած՝ մարդը փորձում է վերծանել, թերևս երաժշտությունն է։

Երաժշտությունը մեծապես զգալու արվեստ է, այն ուղեկցում է մարդուն բնությունը ճանաչելու առաջին իսկ ակընթարթից։ Քամու խշշոցը, տերևների սոսափյունը, արտույտի երգը, աստղերի փայլը, անձրևի կաթիլը, նույնիսկ լռությունը, արձագանք գտնելով մարդկային հոգում, վերածվեցին երաժշտության։ Երաժշտությունը հին է, ինչպես մարդը, և մարդու հետ անցել է իր մանկության, պատանեկության, հասունության ճանապարհը։ Սկսվելով մեկ ձայնից, մեկ գործիքից, երաժշտությունը աստիճանաբար կամեցավ խոսել շատ գործիքներով, շատերի հետ, դուրս եկավ կենցաղային նեղ շրջանակներից, բարձրացավ բեմահարթակ, անցավ երկրից երկիր։ Աշխարհը զարմանքով ընդունեց այն բազմազանությունը, որ կրում է երաժշտությունն իր մեջ, և դարձավ շփման հզոր միջոց բազում ազգությունների միջև։ Դրան նպաստեց նաև այժմյան նոտագրական սիստեմի ստեղծումը, որ վերջնականապես ձևավորվեց 18-րդ դարում։ Յուրօրինակ «խազային» նոտագրություն են ունեցել հայերը դեռևս 9-րդ դարում, դրա շնորհիվ է մոռացությունից փրկվել մեր հիանալի միջնադարյան տաղերգությունը։

Երաժշտությունը սովորաբար բաժանում ենք ժողովրդականի, դասականի, էստրադայինի։ Պատահական չէ հիշյալ թվարկումը ժողովրդականից սկսելը, ազգը բնորոշվում է որքան իր լեզվով, սովորույթներով, նիստուկացով, նույնքան էլ ազգային անկրկնելի արվեստով, որ ուղղակի արտահայտումն է իր խառնըվածքի, բնավորության, աշխարհընկալման։ Այսօր երբ նույնիսկ

էլեկտրոնային երաժըշտություն է ստեղծվում, առավել սրտառուչ է այն հոգատարությունը, որ ցուցաբերվում է ազգային արվեստի, մասնավորապես երաժշտության հանդեպ: Մինչև այժմ պահպանվել ու հնչում է հարյուրից ավելի գործիք Հնդկաստանում, ուր անչափ զարգացած է գործիքային կատարողական արվեստը: Ռիթմի և մեղեդու ճոխությունն այստեղ հակապատկերն է հին եգիպտական երգերի, որ կատարվում են առանց նվագակցության, պարզ են, անմիջական: Նույնչափ երաժշտական են Շրի Լանկայի հնամենի երգող զանգերը, ճավա կղզու «Համելան» նվագախումբը, որը կազմված է հարվածային գործիքներից: Ճապոնիայի «Նոո» ազգային դրամատիկական թատրոնը հիմնադրվել է 14-րդ դարում և մինչև այժմ էլ գործում է «եվրոպական» թատրոնների հարևանությամբ: Պակաս հետաքրքրությամբ չեն ընկալվում նեգրական սպիրիչուեսը, իսպանական պարային ու կիթառային արվեստը, սլավոն ժողովուրդների ծիսական երգերն ու պարերը: Կենտրոնական հեռուստատեսությամբ հաղորդվում է աշխարհի ժողովուրդների արվեստին նվիրված մի հաղորդաշար, որ կոչվում է «Միածան» և արժանի է ամենայն ուշադրության:

Դառնալով մեր հայկականին, նշենք, որ ազգայինը միշտ չէ, որ գտնվում է բոլորիս հոգատարության և ուշադրության կենտրոնում: Բոլորը չէ, որ քաջատեղյակ են մեր ժողովըրդական երգ ու պարին, գիտեն մեր նշանավոր գուսաններին, որոնք այսօր էլ պարծանքն են մեր ժողովրդական արվեստի: Ժողովրդական գործիքն անբաժան է եղել հայի կենցաղից: Այժմ էլ անշուշտ ավանդույթները շարունակողներ կան, սակայն, ցավոք, քիչ չեն նաև ազգայինի աղավաղված դրսևորումները: Քիչ չեն դեպքերը, երբ խոր, բովանդակալից, բազմիմաստ, կերպարային ժողովրդականը փոխարինվում է անճաշակ, երբեմն գռեհիկ ու հապճեպ խմորված «ռաբիսային»ով, իսկ ավանդական թառն ու դուդուկը՝ ակորդեոնով ու կըլարնետով:

Որքան լավ կլինի, եթե մեր դպրոցներում երգիպարի, ժողգործիքների խմբակներ բացվեն, հատուկ ուսումնասիրվի ժողովրդական ստեղծագործությունը, որը հասել է մեզ դարերի խորքից և որը պարտավոր ենք անաղարտ փոխանցելու եկող սերունդներին: Սակայն առայժմ դպրոցներում անասելի արագությամբ աճում են էստրադային անսամբլները, որոնց ստեղծումը, ցավոք, այլ նպատակ չի հետապնդում՝ մոդայից ետ չըմնալու ընդհանուր ձըգտումից բացի: Էստրադան, որ հակված է, կարծես, մարդու մեջ որոշակի տրամադրություն ստեղծելու, միանգամայն «լուրջ» արվեստ է դառնում միայն այն դեպքում, երբ գտնվում է տաղանդավոր ձեռքերում: Հիշենք Էդիտ Պիաֆին, Շառլ Ազնավուրին, Լուիզա Մինելլիին, Ալլա Պուգաչովային: Շատ ավելի կարժեքավորվեր հետաքրքրությունը էստրադային և ջազային երաժշտությունների հանդեպ, եթե ուսումնասիրվեին նրանց պատմությունն ու ակունքները, զարգացման տրամաբանությունը, տարատեսակները, նվագարանը: Էստրադայինը, ջազայինը իսկապես հասկանալու և գընահատելու համար նույնպես գրագիտություն է պահանջվում, և գիտակցված վերաբերմունքի դեպքում շատ ավելի մեծ կլինի նրա պատճառած բավականությունը: Իսկ այդ մի պահ է լոկ հոգևոր այն հարստության համեմատ, որ կրում է իր մեջ դասական երաժշտությունը:

ՄԵՐ ՀՅՈՒՐԸ

# ԽՈՐԵՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Առաջին իսկ պարապմունքի ժամանակ մարզիչ Աշոտ Սարիբեկյանի թերահավատությունը փոխվեց զարմանքի: Փոքրիկ Խորենը հնարամիտ խաբսերով «պտտեցնում էր» իրենից տարիքով մեծ տղաներին: «Չէ, սրանից անպատճառ բան դուրս կգա»,— մտածեց մարզիչը:

Երկու-երեք տարի անց Խորենը ֆուտբոլի հանրապետական դըպրոցի չեմպիոն ճանաչվեց՝ տեխնիկական պատրաստվածությամբ Ապա «Անի» թիմի կազմում հաղթող դարձավ «Կաշվե գնդակ» ակումբի համամիութենական մրցումներում, երկրորդ մրցանակի արժանացավ նույնպես համամիութենական «Պատանեկություն» գավաթի խաղարկությունում:

Վարպետների թիմերի մարզիչները վաղուց ուշի-ուշով հետևում էին Խորենի աճին: Ֆուտբոլի դպրոցն ավարտելուն պես նա հրավիրվեց «Արարատ»-ի կազմում խաղալու:

Տարիները փորձ ու հմտություն բերեցին նըրան, բարձրացավ խաղամակարդակը: Վերջապես եկավ նաև այն պահը, որի մասին երազում է փոխարինող ֆուտբոլիստներից յուրաքանչյուրը՝ դաշտ մտնել հիմնական խաղացողների կազմում: Հովհաննիսյանն իր մուտքը նշեց միանգամից... Եվրոպայի չեմպիոնների գավաթի խաղում՝ հանրահայտ «Բավարիայի» դեմ հիշարժան հաղթանակով: Խորենն ամրապնդվեց «Արարատի» հիմնական կազմում և նույն մրցաշրջանում էլ հասավ իր առաջին լուրջ հաջողության՝ դառնալով ՍՍՀՄ գավաթակիր: Իսկ հաջորդ տարին՝ 1976 թըվականը նրան բերեց Եվրոպայի երիտասարդական առաջնության հաղթողի կոչում:

«Արարատի» 25-ամյա կիսապաշտպանի խաղի հմուտ կազմակերպումը, նրա ժամանակին ու ճիշտ փոխանցումները, տեխնիկական հիանալի պատրաստականությունը և թափն ու մրցակցի դարպասը գրավելու հմտությունը հիացմունք են պատճառում ֆուտբոլասերներին: Խորենի հուժկու և դիպուկ հարվածները մեկ անգամ չէ, որ հաղթական միավորներ են բերել «Արարատին»: Ահա այս հատկանիշներն են, որ գրավեցին նաև երկրի առաջին հավաքականի մարզիչների ուշադրությունը և նա ընդգրկվեց ՍՍՀՄ օլիմպիական հավաքականի կազմում:

*Ա. ԲԱԲԱՅԱՆ*

*Լուսանկարը՝*
*ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ*



# Մկնիկը Դատժեց Կատվին

ՎԱՀԵ ՊՈՂՈՍՅԱՆ

## 1. ԳԱԹԱ ՉԿԱՐ, ՈՐՈՎՀԵՏԵՎ ԱԼՅՈՒՐ ՉԿԱՐ

Աշխարհում կար մի Հայր մուկ, մի Մայր մուկ և մի Որդի մուկ: Հայր մուկը ալյուր էր բերում, Մայր մուկը գաթա էր թխում, Որդի Մկնիկը ուտում էր, երգում, պարում, իր համար ուրախ մեծանում:

Մի օր էլ Հայր մուկը ալյուր չբերեց, Մայր մուկը գաթա չթխեց ու Մկնիկը քաղցած մնաց:

— Քաղցա՜ծ եմ,—լաց եղավ նա,—գաթա՜ եմ ուզում:

— Գաթա չկա, որովհետև ալյուր չունենք,—ասաց Մայր մուկը:

— Թո՛ղ հայրիկը ալյուր բերի,—ասաց Մկնիկը:

Հայր մուկը գլուխը կախեց և հազաց՝ ըհը՛, ըհը՛...

Նա ուզում էր ասել, որ ալյուր չկա, որովհետև Կատուն հայտնվել է, բայց ամաչեց Մկնիկի մոտ խոստովանել, թե ինքը սարսափում է Կատվի ժանիքներից, դրա համար էլ ասաց.

— Դե, ես գնամ ալյուր բերեմ:

Մայր մուկը զարմացած նայեց Հայր մկանը: Մկնիկը ուրախացած ծափ զարկեց: Հայր մուկը բնից դուրս եկավ ու գնաց:

Քիչ անց Հայր մուկը աղեկտուր ծղրտոցով վազեվազ ներս ընկավ. սարսափից նրա աչքերը չռվել, բեղիկները դողում էին:

— Ի՞նչ թարձր ծղրտալ գիտես, հայրի՛կ: Իսկ աչքերդ ինչպե՞ս ես կարողանում չռել, բեղերդ ինչ լա՞վ ես դողացնում,—զվարճացավ Մկնիկը:

— Ձա՛յնդ,—նրան սաստեց Մայր մուկը:—Դու փոքրիկ ես ու ոչինչ չես հասկանում:

Հետո Հայր մկանը դառնալով հարցրեց.

— Նա այստեղ՝ մոտակայքո՞ւմ էր:

Հայր մուկը գլուխը կախ գցեց, իբր՝ այո, և թուլացած ոտքերը նրան հազիվ հասցրին բազմոցին, որի վրա խեղճը փռվեց՝ շարունակելով հևալ ու ոտքից գլուխ դողալ:

— Դե՛, շո՞ւտ արեք, ես գաթա եմ ուզում:

— Գաթա չկա, որովհետև ալյուր չունենք,—ասաց Մայր մուկը։

— Ալյուր չկա,—մի կերպ շունչը տեղը բերեց Հայր մուկը,—որովհետև Կատուն հայտնվել է։

— Ի՞նչ անենք, որ հայտնվել է,— չէր հասկանում Մկնիկը։

— Չես տեսնո՞ւմ, հայրիկը հազիվ է հասցրել պոչը նրա ատամների արանքից փախցնել,— բարկացավ Մայր մուկը։

— Եթե չհասցներ փախցնել, ի՞նչ կլիներ,—հարցրեց Մկնիկը։

— Եթե չհասցներ փախչել, Կատուն հայրիկին կուտեր,—վշտացավ Մայր մուկը։

— Ինչպե՞ս թե,—զարմացավ Մկնիկը։— Ինկապե՞ս Կատուն կարող է քեզ ուտել, հայրի՛կ։

— Կարող է ուտել,— ամաչելով դեմքը շրջեց Հայր մուկը,—նա իմ հորն էլ է կերել, իմ պապին էլ, պապիս պապին էլ։

— Իսկ ինչո՞ւ դու չես պատժում նրան,— բարկությունից Մկնիկի ձայնը խզվեց,—պատժի՛ր ինչպես պետքն է։

— Չեմ կարող,— խեղճացավ հայրիկը։—Աշխարհում դեռ ոչ մի մուկ Կատվին չի կարողացել պատժել։



— Իսկ ես կպատժե՛մ,— բղավեց Մկնիկը,—ա՛յ, կտեսնեք, թե ինչպես կպատժեմ,—ու զայրացած դուրս վազեց։

— Սպասի՛ր,—ճչաց Մայր մուկը։

— Մկնի՛կ, մի՛ գնա,—գոչեց Հայր մուկը։

Նրանք երկուսն էլ ուզում էին վազել Մկնիկի ետևից, նրան բռնել, ետ բերել և ականջները մի լավ ոլորել։ Բայց քանի որ Կատվից շատ էին վախենում մնացին իրենց բնում և աղեկտուր լաց եղան։

## 2. ՄԿՆԻԿԻ ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

Ճնճղուկի բնի կողքից անցնելիս Մկնիկը երգի ձայն լսեց։

Մայր ճնճղուկը ձագերին քնեցնում էր.

Օրոր ասեմ, քնեք, նա՜յ, նա՜յ,
Օրոր ասեմ, բալիկնե՜ր,
Կատուն կգա, ամա՜ն, վա՜յ, վա՜յ,
Կատուն ունի սուր ճանկեր...

— Բարև՛, ծի՛տ,— ասաց Մկնիկը վեր նայելով,—Կատուն ձե՞զ էլ է անհանգստացնում։

— Հա՜, այդ դո՞ւ ես, Մկնի՛կ, բարև՛,—ասաց ճնճղուկը,—հապա ինչպե՞ս։ Առավոտյան ձագուկներիցս մեկը՝ ա՛յ այս չարաճճի դեղնակտուցը, բնից ցած ընկավ և ես հազիվ կարողացա նրան Կատվի ճանկերից փախցրնել։ Չե՞ս տեսնում, պոչիս փետուրները պոկոտված են։

— Հը՜մ,—գլխով արեց Մկնիկը։

— Ի՞նչ,—չհասկացավ ճնճղուկը։

— Ասում եմ՝ Կատվին հարկավոր է պատժել։

— Ինչպե՞ս, ախր նա մեզանից ուժեղ է։



— Դե, եթե վախենում ես, առանց քեզ էլ յոլա կգնանք:

— Սպասի՛ր, Մկնի՛կ,—նրա ետևից հասավ Ճնճղուկը:—Վերցրո՛ւ իմ թևերը, պետք կգան:

— Դե լավ, տո՛ւր,—հաշտվեց Մկնիկը և Ճնճղուկի թևերը վերցնելով՝ շարունակեց իր ճամփան:

Շատ գնաց, քիչ գնաց, հասավ Ոզնու տանը:

Ոզնին, բնի առաջ նստած, ձագուկների փշերն էր սանրում: Իսկ դրանք՝ այդ փշերը, այնպե՜ս կոտրատված, այնպե՜ս խճճված էին:

— Բարև՛ ձեզ,—ասաց Մկնիկը մոտենալով,— ո՞վ է այդպես գզգզել այս խեղճերին:

— Կատուն, էլ ո՞վ,—բարկությունից հևալով ասաց մայր Ոզնին,— հենց որ տանը չեմ լինում, այդ անիրավը գալիս, պստլիկներիս գնդակի պես այս ու այն կողմ է գլորում:

— Հը՞մ—գլխով արեց Մկնիկը:

— Ինչպե՞ս, ինչպե՞ս,— չհասկացավ Ոզնին:

— Ասում եմ՝ Կատվին հարկավոր է պատժել:

— Բան դուրս չի գա,— ասաց Ոզնին:—Ճիշտ է, երբ ես փշեգունդ դառնում, նա ինձ չի կարող հաղթել, բայց այդ ժամանակ ես էլ նրան ոչինչ չեմ կարողանա անել: Այնպես որ՝ ավելի լավ է նրա հետ գործ չունենամ:

— Դե, եթե վախենում ես, առանց քեզ էլ յոլա կգնանք:—Մկնիկը ձեռքը թափ տվեց ու հեռացավ:

— Սպասի՛ր, Մկնի՛կ, նրա ետևից հասավ Ոզնին:— Վերցրո՛ւ իմ փուշը, պետք կգա:

— Դե լավ, տո՛ւր,—հաշտվեց Մըկնիկն ու Ոզնու փուշը վերցնելով՝ շարունակեց իր ճամփան:

Շատ գնաց, քիչ գնաց, հասավ Մեղվի փեթակին:

Փեթակից երկու քայլ այս կողմ Մեղուն իր հագուստներն էր ուղղում, բզզալով ու շարունակ կրկնելով՝ «Օ՜յ, ինչ լա՜վ փախա, օ՜յ, ինչ լա՜վ ազատվեցի...»

— Բարև՛, Մեղո՛ւ,—ասաց Մկնիկը,—այդ որտեղի՞ց ես այդպես փախել, այդ որտեղի՞ց ես այդպես ազատվել:

— Կատվի ճանկերից, էլ որտեղի՞ց,—ասաց Մեղուն,—ուզում էր թաթով ինձ ճզմել:

— Հը՞մ,—գլխով արեց Մկնիկը:

— Իբր թե ի՞նչ՝ հը՞մ,—չհասկացավ Մեղուն:

— Ասում եմ՝ Կատվին հարկավոր է պատժել:

— Իհարկե, հարկավոր է,—տզզաց Մեղուն:—Բայց ո՞վ կպատժի:

— Մենք,— ասաց Մկնիկը,— ես, դու, Ճնճղուկը, Ոզնին: Մենք կպատժենք, որովհետև նա մեզ բոլորիս նեղություն է տալիս. քեզ ուզում է ճզմել, Ճնճղուկի պոչի փետուրներն է պոկել, Ոզնու ձագերին է այս ու այն կողմ գլորում, իմ պապերին է կերել և հիմա էլ ուզում է հայրիկիս ուտել...

— Ահա, տեսնո՞ւմ ես, նա բոլորիցս էլ ուժեղ է, էլ ինչպե՞ս կարող ենք նրան պատժել:

— Ուժեղ է, երբ մենք առանձինառանձին ենք: Հենց որ միավորվեցինք, նրա հախից կգանք:

Դե, եթե դու էլ ես վախենում, առանց քեզ էլ յոլա կգնանք:

— Սպասի՛ր, սպասի՛ր,—ասաց Մեղուն:— Վերցրո՛ւ իմ խայթը, պետք կգա:

— Դե լավ, տո՛ւր— ասաց Մկնիկը:— Ես հիմա ուղիղ Կատվի մոտ կգնամ:

## 3. ՊԱՏԻԺԸ

Կատուն իր կյանքում երբեք այդքան պստլիկ-ճստլիկ Մուկ չէր տեսել:

— Հոպ,—ասաց նա ու թփերի արանքից թռավ, նստեց Մկնիկի դիմաց: Մկնիկը մի պահ կանգնեց, բայց հետո շարունակեց առաջ գալ:

— Ժանիքներս տեսե՞լ ես,—մռռաց Կատուն, շրթունքը վեր քաշելով:

— Տեսել եմ, տեսել,— հանգիստ ասաց Մկնիկը,— հենց այդ ժանիքներիդ համար էլ քեզ կպատժեմ, որ չփորձես հայրիկիս ուտել պապիս ու նրանց պապերի պես:

Կատուն աչքերը տրորեց՝ երա՞զ է, Մկնիկը ինչպե՞ս է որ չչքվեց: Կատուն վրա պրծավ: Մկնիկը ճարպկորեն մի կողմ ցատկեց և՝ ա՛ռ քեզ, Մեղվի խայթով խայթեց Կատվի քիթը:

— Օ՛յ, օ՛յ, օ՜յ,—մլավեց Կատուն ու փախավ: «Այս երազը զվարճալի լինելուց բացի նաև սարսափելի է»,— մտածեց նա և ծառը բարձրացավ:

Նա նոր էր տեղավորվել ճյուղին, ուրախ, որ լավ պրծավ անիծված Մըկնիկից, երբ հանկարծ տեսավ մի բան, որը ոչ մի անգամ, ոչ մի կատու, նույնիսկ երազում չի տեսել:

Մկնիկը ճնճղուկի պես թռավ, հասավ իրեն և՝ առ քեզ, Ոզնու փշով ըսկըսեց ծակծկել:

Կատուն սարսափահար ցած նետվեց ծառից ու իրեն գցեց լճակը, շարունակ ճչալով, թե երբ պետք է վերջանա այդ անիծված երազը, որ կարողանա հանդուգն Մկնիկին բերանն առնել:

— Սա երազ չէ,—ջրի մեջ էլ նըրան հասավ Մկնիկը,—ես քեզ խայթում եմ Մեղվի խայթով, որպեսզի այլևս թաթով Մեղվին չճզմես, ես քեզ ծակում եմ Ոզնու փշով, որ Ոզնու ձագերին գնդակի պես այս ու այն կողմ չնետես, ես քո ետևից հասնում եմ ճընճղուկի թևերով, որ Ծնճղուկի պոչի փետուրները չպոկես և չհամարձակվես բնից ընկած ճնճղուկներին ուտել: Ահա այսպես մենք միավորվել ենք, որ քո հախից գանք:

Մկնիկը այդ ամենն ասում էր արագ-արագ ու հետն էլ խայթում Մեղվի խայթով, ծակծկում՝ Ոզնու փշերով:

Կատուն համոզվեց, որ տեսածը երազ չէ և հոնգուր-հոնգուր լաց լինելով ասաց.

— Ներողություն, այլևս չեմ անի:

— Դե լավ, եթե խոստանում ես փոխվել, դառնալ բարի՝ ներում եմ:

Մկնիկը ուրախ-ուրախ տուն վերադարձավ:

Հայր Մուկը վազեց, ալյուր բերեց, Մայր մուկը գաթա թխեց, երեքով միասին սեղան նստեցին, կուշտ կերան:



# ԻՆՉՈՒ...

Հեքիաթը այստեղ էլ կվերջացնեինք, բայց ինչ-որ բան պակաս կըմնար:

Եթե Կատուն խելոքացավ, հապա ինչո՞ւ այսօր էլ հալածում է մկներին ու ճնճղուկներին, ինչո՞ւ է ճզմում մեղուներին, ինչո՞ւ է գնդակի պես աջ ու ձախ գլորում Ոզնու ձագերին,—կհարցնեք դուք, և ճիշտ կանեք: Ախր ճիշտ որ, այսօր էլ այդ ամենն այդպես է: Միայն թե դրա մեղավորը իրենք են՝ Մկնիկը, Ոզնին, Ճնճղուկը և Մեղուն: Ախր նրանք Կատվին հաղթեցին, որովհետև միավորվել էին ու Կատվից ուժեղ դարձել: Բայց հետո նրանք բոլորն էլ վիճեցին իրար հետ և բաժանվեցին: Ոզնին ասում էր, որ Կատվին հաղթելու գործում ամենակարևորը իր փուշն է, Մեղուն պնդում էր, թե իր խայթն էր ամենալավ զենքը, Ծընճղուկը ոչ մի կերպ չէր համոզվում, թե առանց իր թևերի հնարավոր կլիներ Կատվին պատժել:

Իսկ Մկնիկը գտնում էր, որ ինքը առանց մեկի թևերի, մյուսի փշի, երրորդի խայթի էլ կարող էր Կատվին պատժել:

Իսկ Կատուն, հենց իմացավ, որ նրանք այլևս միավորված չեն, սկսեց առանձին-առանձին նրանց հախիցը գալ: Ու քանի որ ամենից շատ չարացել էր Մկնիկի վրա, ամենաշատն էլ սկսեց նրան հալածել: Միայն թե, ամեն անգամ, մի որևէ մուկ բռնելիս, առաջվա պես ոչ թե միանգամից խըժռում էր, այլ նախ խաղում էր, իբր կատակ է անում՝ թավալ էր տալիս, պոչից էր բռնում, ոտքից էր բռնում, մինչև համոզվում էր, որ չէ՜, մոտը մեղվի խայթ չկա, ոզնու փուշ ու ճնճըղուկի թևեր չկան, նոր միայն ուտում էր, խեղդամահ էր անում և ուտում:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



# ՓՆՏՐՈՒՄ ԷՐ ՄԱՅՐԻԿԻՆ

Գարուն էր: Քաղաքի փողոցներում մեծ աշխուժություն էր: Թումանյան և Նալբանդյան փողոցների խաչմերուկը նոր էի անցել, երբ կողքիս փոքրիկ, բայց սրընթաց քայլեր զգացի: Տարեց մարդու նման մեջքը կորացրած գնում էր մի մանուկ: Տղան երեք տարեկան չէր լինի: Շորերը սաստիկ կեղտոտ էին, ով գիտի երբ էին նրանք ջուր ու օճառ տեսել: Կողքով անցնողներից շատերն էին նկատում նրան, նայում ետևից, բայց, դժբախտաբար, միաժամանակ, երևի ոչ առանց ցավի, շարունակում էին իրենց ճանապարհը:

Ես հավասարվեցի մանչուկին և քայլելով նրա կողքից, հարցրի.

— Ո՞ւր ես գնում:

— Մ՛ամայիս մոտ:

— Մամադ որտե՞ղ է:

— Էնտեղ,— նա ձեռքը դեպի առաջ մեկնեց:

— Մամայիդ անունն ի՞նչ է:

— Մամա է:

— Մամադ որտե՞ղ է աշխատում:

Մանուկը լուռ էր: Նորից փորձեցի հասկանալ նրա երթի ուղղությունը: Բայց նա չկարողացավ ոչ մի նոր բան հաղորդել:

— Մամադ վաղո՞ւց է գնացել «էնտեղ»:

Մանուկն ուսերը թոթվեց:

— Ձեր տունը որտե՞ղ է:

— Էնտեղ,— նա ձեռքը դեպի ետ մեկնեց:

— Այսօր ո՞վ հագցրեց քո շորերը, պապա՞ն,— կռահելով նրա որբությունը նոր հարց տվի նրան:

— Ուրիշ «տոտան»:

— Իսկ ո՞վ քեզ ասաց, թե որտեղ կգտնես մամային:

— Էնի:

Անհոգի «խնամակալի» դեմքն ինձ համար պարզ էր: Մի քանի վայրկյան հետո մանուկը ոտքը պետք է դներ Աբովյանի սալարկին և մտներ տրվյալ խաչմերուկում անվերջ այս ու այն կողմ սլացող մեքենաների ծըխորի մեջ: Ես բռնեցի նրա ձեռքը ու լուռ, հայացքով սկսեցի փնտրել միլիցիոների հագուստով որևէ մեկին: Եվ... այդ րոպեին իմ կողքից պոկվեցին ու սուրացին երկու կարմիր փողկապավորներ: Տղան հայ էր, աղջիկը՝ ռուս: Նրանք դըպրոցի ճանապարհին էին: Անցորդների մեջ նրանք կանգնեցրին միլիցիայի տարազով մեկին և ինչ-որ բան ասելով նրան, ձեռքով ցույց տվեցին մեր կողմը: Սպա էր: Նա շրջվեց դեպի մեզ և խոկուն ընդառաջ եկավ պիոներների հետ միասին: Ես կռահեցի, որ այդ երեխաները քայլել էին իմ և մանկան ետևից և ունկնդրել էին մեր երկխոսությունը: Մինչ կմոտենային մեզ, փոքրիկը փորձում էր ազատել իր ձեռքն իմինից, որպեսզի շուտ գնա «մամային գտնելու»:

— Դուք գիտե՞ք, թե որտեղ է ապրում այս երեխան,—ինձ հարցրեց երիտասարդ լեյտենանտը:

— Ո՛չ: Ես նրան քիչ առաջ նկատեցի...

Սպան կռացավ և երեխային մոտավորապես նույն հարցերը տվեց, ինչ որ ես, ու նույն պատասխաններն ստացավ:

— Բալի՛կ ջան, արի՛ ինձ հետ, ես գիտեմ, թե որտեղ կգտնենք մամային,—ասաց նա և մանկանը գիրկն առավ:

Մենք՝ երեքով, ուրախացած, որ մանուկը դուրս բերվեց անորոշության և վտանգների ոլորտից, ջերմ շնորհակալություն հայտնեցինք սպային:

*ԱՂԱՎՆԻ ՍՏԵՓԱՆՅԱՆ*



# ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

1. Հասարակածում հուլիսի միջին ջերմաստիճանը քիչ է պատահում, որ բարձրանա 25°-ից: ՍՍՀՄ հարավում, Միջին Ասիայի անապատներում (Կարակում, Կզըլ-կում), նույն ամսվա միջին ջերմաստիճանը հասնում է 30,5—45°-ի:

2. Իսսիկ-Կուլ լիճը համարվում է աշխարհի լեռնային լճերից ամենամեծը: Ընկած է Տյան-Շան լեռնային սիստեմի խորը իջվածքում՝ շրջապատված բարձրադիր լեռներով: Լիճն ունի 700 մետր խորություն: Գարնան և ամռան ամիսներին ջուրը տաքանում է, իսկ աշնան ու ձմռան ամիսներին աստիճանաբար իջնում է նրա ջերմաստիճանը, բայց երբեք չի սառչում:

3. Բերինգի նեղուցը միացնում է Չուկոտյան և Բերինգի ծովերը, Խաղաղ ու Հյուսիսային սառուցյալ օվկիանոսները: Բաժանում է Չուկոտյան և Ալյասկա թերակղզիները, Ասիա և Ամերիկա աշխարհամասերը, ինչպես նաև ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը:

4. Ֆիլխներ: Գտնվում է Անտարկտիդայում, երկարությունը 925 կմ է, լայնությունը մոտ 4 կմ: Նա զբաղեցնում է երկու անգամ ավելի տարածք, քան ամբողջ Բելոռուսական ՍՍՀ-ն:

5. Լյուքսեմբուրգ—տարածությունը 4418 քկմ, բնակչությունը 310 հազ.:

Անդորրա— տարծությունը 452 քկմ, բնակչությունը 70 հազ.:

Լիխտենշտեյն—տարածությունը 157 քկմ, բնակչությունը՝ 26 հազ.:

Սան-Մարինո—տարածությունը 60,5 քկմ, բնակչությունը՝ 15 հազ.:

Մոնակո—տարածությունը 1,5 քկմ, բնակչությունը 19 հազ.:

Վատիկան—տարածությունը 44 հեկտար, բնակչությունը 1000 մարդ:

6. Աշխարհի ամենաբարձր ջրվեժը Անխելն է, որը հայտնի է դարձել վերջին տասնամյակներում: Գտնվում է Հարավային Ամերիկայում, Վենեսուելայի տերիտորիայով հոսող Օրինոկո գետի սիստեմի մեջ մտնող արտաքին աշխարհից համարյա մեկուսացած Այուան-Տեպույ կոչվող լեռան զառիթափ թեքությունով գահավիժող Չուրուն գետի վրա: Ունի 1054 մ անկման բարձրություն: (Հիշենք, որ աշխարհի նշանավոր ջրվեժներից մեկը՝ Վիկտորիա ջրվեժը ունի 120 մ բարձրություն): Անխել ջրվեժը հայտնաբերվել է 1935 թվականին Վենեսուելայի օդաչու Ջիմ Անխելի կողմից: Ի պատիվ օդաչուի ստացել է Անխել անունը:

7. Գտնվում է Խաղաղ օվկիանոսում Նոր Զելանդիա և Սամոա կղզիների միջև ընկած տարածքում: Հայտնաբերվել է 1953 թվականին: Բարձրությունը օվկիանոսի հատակից՝ 2555 մետր:

8. Առաջին ջրհորը փորվել է Ֆրանսիայում 1126 թվականին Արտուա կոչվող շրջանում, որի հին լատինական անունը եղել է Արտեզիա: Այդ անունով էլ կոչվել են հետագայում փորված ջրհորները, իսկ ջրհորներից ստացված ջրերը՝ արտեզյան ջրեր:

*ԿԱՐՈ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*վաստակավոր ուսուցիչ*





# ԱՆԱՎԱՐՏ ԴԻՄԱՆԿԱՐ

1972 թվականի մարտին Անգլիայի Մեն կղզու առափնյա ջրերում հայտնվեց մի դելֆին-ափալինա և այլևս չհեռացավ այնտեղից: Անդիմադրելի մի ուժ այդ դելֆինին ստիպում էր շարունակ մարդկանց կողքին գտնվել: Կարճ ժամանակամիջոցում նա ծանոթություն հաստատեց կղզու բոլոր լողորդների ու ջրասուզակների հետ: Դելֆինին կնքեցին Դոնալդ անունով:

Դոնալդն արդեն հայտնի «անձնավորություն» էր, երբ Մեն կղզի եկավ դեղագործական մի խոշոր ֆիրմայի գիտական աշխատակից Հորացիոս Դոբզը: Ծատերի նման նա նույնպես եկել էր տեսնելու նշանավոր դելֆինին, դեռևս չկասկածելով, որ այդ հանդիպումը վճռորոշ է լինելու թե՛ իր, թե՛ դելֆինի համար:

Դոնալդն առաջին դելֆինը չէր, որ փորձում էր հաղորդակցվել մարդկանց հետ: Դեռևս հռոմեացի պատմիչ Պլինիոս Ավագը հիշատակել է Միջերկրական ծովի ափին ապրող մի տղայի ու դելֆինի մտերմության մասին: Դելֆինը տղայի կանչով մոտենում էր ափին և նրան ամեն օր իր մեջքին առած անցկացնում ծովածոցը՝ տանում դպրոց ու ետ բերում:

1888 թվականին Նոր Զելանդիայի Հյուսիսային ու Հարավային կղզիների միջև ուղերթներ կատարող փոստանավին սկսեց մի դելֆին ուղեկցել: Անցան տարիներ, Վելլինգտոնի ու Նելսոնի միջև կանոնավոր ծովային հաղորդակցություն հաստատվեց, իսկ Պելորուս-Ջեկը, ինչպես անվանել էին դելֆինին, շարունակում էր կատարել լոցմանի իր պարտականությունները, լողում էր նեղուցով անցնող յուրաքանչյուր նավի առջևից և հեռանում միայն այն ժամանակ, երբ նավը բարեհաջող նավահանգիստ էր մտնում: Նորզելանդական կառավարությունը հատուկ հրամանագիր արձակեց, որով օրենքից դուրս էր հայտարարվում յուրաքանչյուր ոք, ով ձեռք կբարձրացներ դելֆինի վրա: Բոլոր նրանք, ում վիճակվում էր մոտիկից տեսնել Ջեկին, առաջին հերթին նրա բարի աչքերի ապշեցուցիչ մարդկային արտահայտությունն էին նկատում: Դելֆինի ու ծովայինների բազմամյա բարեկամությունը ավարտվեց 1911 թվականին, Ջեկի մահով:

Քառասունչորս տարի անց նորզելանդական Օպոնոնի փոքրիկ բնակավայրը հռչակվեց աշխարհով մեկ, շնորհիվ մեկ ուրիշ դելֆին-ափալինայի, որը այն աստիճանի էր բարեկամացել մարդկանց հետ, որ թույլ էր տալիս ձեռքով շոյեն իրեն, իսկ երեխաներին՝ գրկում իրեն հեծած: Հետաքրքիր է, որ Օպոն

(այդպես էին կնքել դելֆինին) մարդկանց զվարճացնելու դիմաց «վարձ» չէր պահանջում, չէր ենթարկվում նրանց ձեռքից հեշտ ճանապարհով սնունդ ստանալու գայթակղությանը, գերադասում էր անձամբ հոգալ իր սնունդը: Հասարակության պահանջով օրենքը Օպոյին նույնպես իր պաշտպանության տակ առավ: Օրենքը ուժի մեջ մտավ 1956 թվականի մարտի 8-ի կեսգիշերից, բայց անբացատրելի ու ցավալի զուգադիպությամբ արդեն առավոտյան Օպոյին մեռած գտան ժայռերի մեջ:

Այս դեպքերը հայտնի էին Հորացիոս Դոբզին, բայց իրականությունը գերազանցեց նրա բոլոր սպասելիքները: Իսկ ամենից շատ նրան զարմացրեց այն, որ դելֆինը ոչ միայն կարողանում էր արագ կողմնորոշվել նոր իրադրության մեջ, այլև համապատասխան հետևություններ էր անում:

Ջկնորսներից մեկը կոտորակով կրակել էր դելֆինի վրա: Վշտացած Դոբզը կարծում էր, որ այլևս երբեք չի տեսնի դելֆինին: Սովորաբար վայրի գազանները նման դեպքերում մարդատյաց են դառնում, լավագույն դեպքում ընկնում են խուսափել մարդուց: Այս դիպվածը, որքան էլ ցավալի, հնարավորություն տվեց ևս մի անգամ բացահայտելու դելֆինի ճիշտ հետևություններ անելու զարմանալի ընդունակությունը: Նա ընդհանրապես չհիասթափվեց մարդկանցից, հիասթափությունը մի մարդուց չտարածեց ընդհանրապես բոլորի վրա: Դոնալդը պարզապես լքեց անհյուրընկալ դարձած ծովափը: Դոբզը նրան գտավ Ուելսի ծովափի մի փոքրիկ ամառանոցային բնակավայրի լողափում, որտեղ նա դարձյալ բոլորի սիրելին էր: Այս հանդիպումն էլ վճռական եղավ: Դոբզը որոշեց հրաժարվել գիտաշխատողի ապահովված ու չափավոր կյանքից, որպեսզի կարողանա սերտ կապ պահպանել դելֆինի հետ, որտեղ էլ նա լինի: Դոբզը ազատվեց աշխատանքից և երեք ամառ՝ 1975 թվականին Ուելսի ծովափում, իսկ 1976-ին և 1977-ին Կորնուելի ափերին անցկացրեց Դոնալդի հետ: Այդ ընթացքում նա մի ֆիլմ նկարահանեց իր բարեկամ Դոնալդի մասին և գրեց «Վայրի դելֆինի հետքերով» ուշագրավ գիրքը, որտեղ փորձում է ստեղծել նրա հոգեբանական դիմանկարը:

Դոնալդը ի ծնե չարաճճի էր, օժտված էր հումորի բնածին զգացումով և պարզապես խելքը թռցնում էր տեխնիկական հարմարանքների համար: Նրա թուլությունն էին խարիսխները, նավակների մոտորները: Նա կարող էր ժամերով հետևել Պորտ-Էրինի օվկիանոգիտական կայանի աշխատակիցների ստորջրյա աշխատանքներին: Իսկ երբ վերջապես հագուրդ էր տվել իր հետաքրքրասիրությանը, վճռեց, որ ինքը և կայանի աշխատակիցներ Ջոաննա Ջոունզն ու Մայքլ Բեյտըսը արդեն այնքան են մտերմացել, որ արդեն կարող են երբեմն էլ կատակել իրեն հետ: Եվ երբ մի անգամ ապարներով լի հերթական դույլը վերև գնաց, Դոնալդը ջրի մակերևույթի մոտ հասավ դույլին և դնչով շուռ տվեց այն: Կարծելով, որ դա պատահաբար եղավ, Ջոաննան նորից լցրեց դույլը: Պատմությունը կրկնվեց: Հաջորդ օրը նույնպես հնարավոր չեղավ աշխատանքները շարունակել: Խաղը դուր էր եկել Դոնալդին: Ստիպված եղան դույլին փականքով կափարիչ հարմարեցնել: Երբ վերսկսեցին աշխատանքները, Դոնալդը անմիջապես հայտնվեց Ջոաննայի կողքին, և նրա ասելով, մինչ ինքը դույլը լցնում էր ապարներով, Դոնալդը պտըտվում էր իր շուրջը և չարաճճիորեն աչքով անում: Բայցահա Ջոաննան սկսեց փակել կափարիչը, և Դոնալդը միագամից լռեց, մոտ լողաց ու սկսեց դիտել, թե այդ ինչով է զբաղված Ջոաննան: Հիմա էլ կափարիչը դարձավ Դոնալդի ուշադրության առարկան և երկար ժամանակ նա փորձում էր բացել այն:

Դոնալդը շատ լավ գիտեր, թե որտեղ իրեն ինչպես պիտի պահի: Հաճախ էր լողափի ծանծաղ ջրերում խաղում լողացողների հետ, բայց միշտ էլ մեծագույն զգուշություն հանդես բերելով: Նա երեք ու կես մետր երկարություն և ավելի քան երեք հար-

յուր կիլոգրամ քաշ ուներ և զգում էր, որ անզգույշ լինելու դեպքում կարող է վնասել մարդկանց։ Իսկ երբ հոգնում էր ըզգույշ լինելուց, մի քանի րոպեով հեռանում էր ափից, ազատություն տալիս իր մեջ կուտակված էներգիային՝ գըլխապտույտ ցատկեր ու թռիչքներ կատարում, ապա նորից մոտենում ափին՝ հանգիստ ու ըզգուշորեն մարդկանց հետ խաղալու համար։

Դոբզը իր գրքում Դոնալդի միանգամայն գիտակցված վարքի բազմաթիվ օրինակներ է բերում։ «Դեպքը տեղի ունեցավ Կորնեուելի ծովափում,—գրում է նա։— Սկսնակ լողորդների մի խումբ մարզվում էր փրկարար Բոբ Կարսուելի ղեկավարությամբ։ Հասկանալի է, որ Դոնալդը անմիջապես հայտնվեց նրանց կողքին։ Ըստ երևույթին, նըկատել էր լողորդների անփորձությունը և երբ նրանք հերթով սուզվում էին, հոգատարությամբ ուղեկցում էր նրանցից յուրաքանչյուրին։ Եվ երբ նրանցից մեկի ոտքը բռնվեց, Դոնալդը անմիջապես հասավ ու դնչով նրան պահում էր ջրի երեսին, մինչև որ Կարսուելը լողալով մոտեցավ։ Երկուսով նրանք անհաջողակ լողորդին մոտեցրին նավակին, և Դոնալդը նույնիսկ նրան օգնեց նավակ բարձրանալ։ Ապա գլուխը ջրից հանած, ակնհայտ հուզմունքով հետևում էր, թե ինչպես են շփում տուժածի ոտքը։ Դոնալդըն իր առաքելությունը ավարտված համարեց միայն այն ժամանակ, երբ ջղաձգությունն անցավ և լողորդը իրեն լավ զգաց»։

Ի՞նչ հետևություն կարելի է անել այս ամենից։ Հորացիոս Դոբզը եզրակացնում է, որ դելֆինի անխալ և չափազանց նուրբ վարքագիծը ամենատարբեր իրադրություններում, թույլ է տալիս դրանք համեմատել մտածողական այն պրոցեսների հետ, որոնք սովորաբար միայն մարդուն են վերագրվում։

Դոբզը դելֆինի բնավորության շատ ուրիշ գծեր ևս հայտնաբերեց։ Օրինակ, Դոնալդը երբեմն գնում էր ամայի ծովափերը և մեծ բավականությամբ ականջ դընում առափնյա քարերի վրա գլորվող ալիքների նվագին։ Պակաս հետաքրքրական չէ և նրա սերը երեխաների նկատմամբ, որոնց հետ խաղալիս Դոնալդը երբեք չէր հոգնում։

Առայժմ դեռ հայտնի չէ, թե ինչն է ստիպում վայրի դելֆիններին երբեմն լքել օվկիանոսի անսահման տարածությունները, ցեղակիցներին և ամենօրյա շփման մեջ մտնել մարդկանց հետ։ «Ինչքան էլ ես նկարագրեմ Դոնալդին,— գրում է Հորացիոս Դոբզը,— նրա դիմանկարը երբեք չի ավարտվի։ Որովհետև նրա բնավորության յուրաքանչյուր գծի ետևում ամենայն հավանականությամբ թաքնված է ևս ինչ-որ մի բան, որ չհայտնաբերված է մնացել»։

## ՕԼԻՄՊԻԱԴԱ-80



Իզմայլովոյում կառուցվել է, հյուրանոցային համալիր, Լենինի պողոտայի վրա վեր է խոյացել զբոսաշրջիկների 30 հարկանի կենտրոնական տունը... 27 հազար տեղով ավելացել է մայրաքաղաքի հյուրանոցային համարների թիվը, իսկ մնացած զբոսաշրջիկները կտեղավորվեն մյուս հյուրանոցներում, բուհերի, տեխնիկումների ու բազմաթիվ այլ հանրակացարաններում, որտեղ պայմանները չեն զիջի ամենալավ հյուրանոցին...




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15:
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-88, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 7 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջում՝ օլիմպիական կրակը Մոսկվայում:

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար). ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 04789: Պատվեր 849: Տպաքանակ 51244: Տպ. 3 մամ.: Թուղթ՝ 70×100¹/₁₆: Հանձնված է արտադրության 29/V 1980 թ.: Ստորագրված է տպագրության 4/VII 1980 թ.:

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:




ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԳԱՂՏՆԱԳԻՐ



1 ..........

2 ..........

3 ......

4 .........

5 ........

6 ........

7 .......

8 ..........

9 ........

10 ..............

6/5 2/2 3/5 1/7

Փ 7/3 1/5 6/4 10/10

3/6 3/5 10/5 7/6 3/5 10/5

1/7 4/5 6/1 6/4 4/4 3/5

1/7 3/5 10/5 1/5 4/5 7/3 3/6

6/3 4/5 3/6 1/1 6/4 10/5 4/4 6/4

7/3 10/5 9/8 5/1 4/5 1/5 9/5 4/5 10/5

1/1 4/5 10/5 9/8 3/6 8/10 6/4 1/1

7/3 8/8 4/5 10/5 2/5

9/8 3/5 4/4 6/4 3/5

4/7 4/5 2/2 3/6 6/4 10/5

1/7 3/5 1/1 4/4 5/1 7/3

1/7 5/5 8/10 10/5 6/1 4/5 10/5

ՄՈՍԿՎԱ

1/1 9/8 3/5 4/4 6/5 3/5 3/6 1/7

3/6 3/5 1/1 7/3 10/5 7/1 4/5 3/6 3/5 1/1

80

7/3 1/7 1/1 9/8 4/5 1/5 7/6 7/3 1/7

1/7 4/5 3/6 4/7 8/10 1/5 10/5



Մարզաձևերի պատկերների դիմացի կետերը լրացրեք համապատասխան մարզաձևերի անվանումներով: Վանդակներում նշված կոտորակների համարիչը ցույց է տալիս մարզաձևի համարը, իսկ հայտարարն այն տառը, որը պետք է գրվի վանդակում: Ճիշտ լրացնելուց հետո կկարդաք օլիմպիական քաղաքների անունները:

Կազմեց ՅՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ



ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



Օլիմպիական ծրագրով խաղեր են ռոնցքամարտի և այլ մարզաձևերի
տեղի ունենալու նաև Կիևում, Լենին- Նախնական մրցումներ են անցկացվե-
գրադում, Մինսկում, Տալլինում: Առա- լու, իսկ Տալլինում առագաստային
ջին երեքում ֆուտբոլի, ծանրամարտի, սպորտի բոլոր ձևերի: